


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* **http://www.armin.am**

*Էլ. փոստ՝* **info@armin.am**

ՅՕԶԷՖ ՄԱՐՔՈՒԱՐԹ

# ՀԱՅՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

**Հայկական աւանդութիւնների քննական ուսումնասիրութիւն**

**Գերմաներէնից թարգմանեց՝**
**Էւելինա Մակարեան**

(Թեհրան, 2009)

ՀՐԱՄԱՆԱւ

# Տ. ՍԵՊՈՒՀ ԱՐՔ. ՍԱՐԳՍԵԱՆԻ ԱՌԱՋՆՈՐԴ ԹԵՀՐԱՆԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

**ՍՈՅՆ ԳԻՐՔԸ ՀՐԱՏԱՐԱԿՒՈՒՄ Է
ՄԵԿԵՆԱՍՈՒԹԵԱՄԲ ՅՈՎՍԷՓԵԱՆ ԱԶՆԻՒ
ՈՒ ՀԱՒԱՏԱՑԵԱԼ ԸՆՏԱՆԻՔԻ՝
Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՐԵՆՑ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՀՕՐ
ԵՒ ՄՕՐ՝ ԷԼԻԱՍ ՅՈՎՍԷՓԵԱՆԻ ԵՒ
ԱՐԵԳՆԱԶ ԲԱՂՈՒՄԵԱՆ-ՅՈՎՍԷՓԵԱՆԻ:
ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԵՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ՝
ԱԶՆԻՒ ՆՒԻՐԱՏՈՒՆԵՐԻ ԵՒ
ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՈՒ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ
ՀԱՆԳԻՍՏ՝ ԻՐԵՆՑ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ
ԾՆՈՂՆԵՐԻ ՀՈԳԻՆԵՐԻՆ:**



# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

*Ուրախութեամբ հրատարակում ենք Ե. Մարքուարթի «Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը» գրքի հայերէն թարգմանութիւնը: Սոյն գիրքը առաջին անգամ տպւել է հեղինակի չարաղէտ մահից յետոյ (մահանում է փետրւարի 3-ին՝ գազահեղձ եղած), 1932-ին, Ջ. Մեսինանի կողմից Իտալիայում եւ ահա այն հայերէն թարգմանութեամբ առաջին անգամ լոյս է տեսնում: Գրքի թարգմանիչն է տկն. Էւելինա Մակարեանը, որը Երեւանի պետական համալսարանի Հայագիտական հետազօտութիւնների կենտրոնի գիտաշխատողներից է:*

*Գիրքը իր բովանդակութեամբ շատ հետաքրքրական է, իսկ հեղինակի մօտեցումը թեմային շատ լուրջ ու խորաքննին է եղել: Որոշ է, որ հեղինակը լաւապէս ուսումնասիրել է այդ ժամանակահատւածի մեր եկեղեցու պատմութիւնը, որը իր կազմաւորման սկզբնական շրջանում է:*

*«Հայոց եպիսկոպոսութիւններ» բացատրութեամբ, վստահաբար, հեղինակը ի մտի ունի վիճակաւոր եպիսկոպոսներին՝ իրենց վիճակով, այսինքն՝ առաջնորդական աթոռներն իրենց աթոռակալներով եւ ոչ թէ առանձին կամ առանձնակի եպիսկոպոսներ:*

*Հեղինակը յիշատակում է, որ հայոց հայրապետանոցում եւ կամ կաթողիկոսի շրջանակում գործում էին եպիսկոպոսներ, որոնց թիւը նախ յիշատակւում է եօթը եւ ապա 12՝ ի հետեւութիւն մեր Տիրոջ առաքեալների թւի: Սա, սակայ, ժողովական տնօրինումով չէր, հայրապետանոցի հետ կապւած գործերի եւ աւետարանչական ու հովւական աշխատանքների եւ բարեսիրական հաստատութիւնների վերահսկողութեան հետեւութեամբ առաջ եկած եպիսկոպոսական* «պաշտօն»*-ներ էին դրանք:*

*Միւս կողմից՝ Ընդհանուր եկեղեցու պատմութիւնը ուսումնասիրելիս՝ յայտնում է, որ եկեղեցական նւիրապետութիւնը աստիճանաբար է զարգանում, իսկ վարչական ու նւիրապետական դրութիւնը յառաջ է գալիս՝ հետեւոթեամբ տւեալ երկրի աշխարհագրական-քաղաքական վարչական բաժանմունքների: Այսպէս՝ տւեալ երկրի քաղաքական իշխանութեան զուգահեռ էր կրօնական-եկեղեցական իշխանութիւնը. մայրաքաղաքի եպիսկոպոսը նկատւում էր որպէս եպիսկոպոսների մէջ առաջինը. նոյնը եղել է նաեւ հայոց մօտ: Հայոց հայրապետ*

*արքունիքում էր, աւելի ճիշտ, հայրապետանոցը արքունիքին կից էր լինում:*

*Հեղինակը ճիշտ է նկատել, որ Դ եւ Ե դարերում մեր եկեղեցու եպիսկոպոսական դասը, աւելի ճիշտ՝ հոգեւոր ղեկավարութիւնը, գլխաւորաբար Լուսաւորչի տոհմի ներկայացուցիչների ձեռքում էր. նրանց կողքին էր նաեւ Աղբիանոսի տոհմը, որը քրմական ազդեցիկ մի դասի ներկայացուցիչն էր եւ որ Ս. Գրիգոր Լուսաւորչի իմաստուն տնօրինումով քրիստոնէացել էր եւ դարձել գլխաւոր գործակիցը լուսաւորչեան տոհմի:*

*Օրմանեան Սրբազանը խօսելով Ս. Գրիգոր Լուսաւորչի աւետարանչական գործունէութեան եւ իր հետ Կեսարիայից բերած եպիսկոպոսների եւ հետագայում իր իսկ ձեռնադրած եպիսկոպոսների մասին՝ ենթադրում է, թէ Ագաթանգեղոսի յիշատակած չորս հարիւր եպիսկոպոսների թիւը չափազանցութիւն չէ, յատկապէս, երբ նկատի ունենանք, որ Ս. Գրիգոր Լուսաւորչի աւետարանչական գործն ընդգրկում էր նաեւ Վրաստանն ու Աղուանից աշխարհը, ինչպէս նաեւ՝ Խաղտեաց, Մասքթաց, Ալանաց եւ Մարաց երկրները կամ շրջանները:*

*Մարքուարթի ներկայ աշխատասիրութիւնը եթէ մի կողմից վկայութիւնն է իր գիտութեան, պատմութեան հանդէպ ունեցած իր լուրջ եւ գիտական մօտեցման, միւս կողմից էլ այն արտացոլումն է իր ազնիւ, բարեմիտ ու աւետարանաբոյր այն կեցւածքի, որ նա ունեցել է հայ ժողովրդի եւ նրա պատմութեան հանդէպ: Քաջակորով ու վեհանձն հայասէր հայագէտ է եղել Մարքուարթը, որի ուսումնասիրութիւնները իրենց* գիտականութեամբ՝ *նոր լոյս տարածեցին մեր պատմութեան որոշ ժամանակահատւածի վրայ ու հայագիտական եւ բանասիրական որոշ հարցերի պարզաբանման տեսակէտից իր դիտողութիւններն ու լուսաբանիչ բացատրութիւնները եղան շահեկան եւ հարստացուցիչ:*

*«Հայ եպիսկոպոսութիւնների ծագումը» աշխատասիրութիւնը, վստահաբար, Հայ եկեղեցու պատմութեան աշակերտի համար եւս կարեւոր գիտական աղբիւր է, որը նաեւ մեծ նպաստ է բերում Ընդհանուր եկեղեցու պատմութեան:*

*Մեծապէս գնահատում ենք սոյն կարեւոր գործի թարգմանչին՝ տկն. Լուսինէ Մակարեանին եւ ինչու չէ նաեւ գրքի*

*մեկենաս Ցովսէփեան ընտանիքին, որը սիրայօժար կերպով յանձն առաւ այս շատ կարեւոր եւ այժմէական աշխատասիրութեան հրատարակութիւնը։*

*Թող այս մատեանը լինի անթառամ ծաղիկների մի փունջ՝ մատուցուած հանգուցեալ հայագէտ ու հայասէր Ե. Մաքսուարթին՝ որպէս երախտագիտութիւն իր վաստակի ու հայանպաստ գործունէութեան։*

ՍԵՊՈՒՀ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ
ԱՌԱՋՆՈՐԴ ԹԵՀՐԱՆԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

Խմբագիր՝
Դ. Ա. Մաղոյեան

**ՄԱՐՔՈՒԱՐԹ Ե.-Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը.** Հայկական աւանդութիւնների քննական ուսումնասիրութիւն:- Աշխատութիւնը նւիրւած է քրիստոնէութեան առաջին դարերի Հայաստանի եպիսկոպոսութիւնների ծագմանը եւ Հայ եկեղեցու աւանդութիւնների քննութեանը: Ե. Մարքուարթը դիտարկում է պատմաաշխարհագրական ու բանասիրական բաւական ծաւալուն նիւթ, որի իմաստաւորումը, ինչպէս նկատել է հրատարակիչ Ջ. Մեսինան, կարեւոր է ոչ միայն Հայ եկեղեցու, այլեւ արեւելեան շատ եկեղեցիների պատմութեան համար:

Ենթադրւում է, որ աշխատութիւնը գրւել է մօտաւորապէս 1920 թ., երբ Հայոց պատմութեան ու բանասիրութեան խնդիրները հեղինակի ուշադրութեան կենտրոնում էին: Ուսումնասիրութիւնը, լինելով նշանաւոր հայագէտի վերջին գործերից մէկը, հրատարակւել է յետմահու (1932) եւ աշխոյժ հետաքրքրութիւն է առաջացրել գիտական շրջանակներում:

Հայ եկեղեցու պատմութեան շատ խնդիրներ նշանաւոր հայագէտը քննում է պատմաաշխարհագրական ու բանասիրական հարուստ նիւթի օգտագործմամբ, անելով մի շարք ուշագրաւ դիտողութիւններ:

# ԽՄԲԱԳՐԻ ԿՈՂՄԻՑ

*Օտար գիտնականի ցանկացած անկողմնակալ աշխատութիւն մեր պատմութեան, գիտութեան, մշակոյթի վերաբերեալ միշտ ողջունելի է: Ողջունելի, որովհետև չկայ որևէ դէպք, փաստ, իրողութիւն, որի յիշատակումը ամօթալի կամ անցանկալի լինի մեզ համար:*

*Նմանատիպ մի աշխատութիւն է Եօզէֆ Մարքուարթի «Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը» գիրքը: Ինչպէս նշում է գրքի հրատարակիչ Ջուզեպէ Մեսինեան. «Ձեռագիրը կազմում է 117 էջ և սկզբից մինչև վերջ ընթանում է առանց գլուխների բաժանման: Չկան գլխացանկեր: Այս հանգամանքը, ինչպէս նաև, ամբողջ նիւթի կառուցուածքի ու նոյնատիպ բառերի նկարագրութեան և թարգմանութեան տարբերութիւնները այն տպաւորութիւնն են թողնում, որ աշխատանքը տպագրութեան պատրաստ չի եղել»: Սակայն իր ընդգրկումով և գիտականութեամբ հեղինակի այս աշխատութիւնը շատ ու շատ իբրև աւարտուն հրամցուողներից աւելին է և արժէքաւոր: Նոյնը կը կամենայինք ասել նաև ծաւալի մասին, յիշելով Ա. Ֆէտի խօսքերը.*

Вот эта книжка небольшая
томов премногих тяжелей.*

*Եւ իսկապէս բազմաթիւ հատուածներ խորին մտորումների տեղիք են տալիս: Ահա «Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը» գրքի գերմանացի ընթերցողին, ի թիւս այլոց, ներկայացւում է Փաւստոսից քաղուած մի միջադէպ, որ փաստօրէն կարող է բնութագրական լինել մեր և մեր հարևանների դարաւոր յարաբերութիւնների կապակցութեամբ:*

*Վրաց և Աղուանից կողմերի կաթողիկոս Յուսիկի եղբայր Գրիգոր եպիսկոպոսը Աստծու խօսքն է հասցնում օսերին: «Ասում է նրանց՝ Ճանաչեցէք Աստծուն: Լսեցին և ընկալեցին առաջին խօսքն ու հնազանդուեցին: Ապա սկսեցին դիտարկել Քրիստոսի օրէնքները, և սովորեցին, որ Աստծուն ատելի են աւարառութիւնն ու յափշտակութիւնը, սպանութիւնը, ագահութիւնը... Ապա երբ այսպիսի բաներ լսեցին, զայրացան և ի պատասխան նրա [Գրիգորի] խօսքերի ասում են. «Եթէ չյափշտակենք, եթէ աւարառութեամբ [չզբաղուենք], եթէ ուրիշինը չառնենք, ի՞նչպէս ապրենք...»: Եօզէֆ Մարքուարթի՝ սրան կցուող ծանօթագրութիւնը, ուր համեմատութիւն է արւում նաև չինացիների՝ արևելեան թուրքերին բուդդայական ուսմունքի բերելու փորձերի հետ, կարծես գերմանացի ընթերցողին պարտադրում է մեզ համար չահեկան հետևութիւններ*

---

**Փոքրիկ գրքոյկն այս ծանր է ստւար հատորներից:*

անել:

Յոզէֆ Մարքուարթը ծնուել է 1864 թ. դեկտեմբերի 9-ին[1] Գերմանիայի Վիւրտէնբերգ նահանգի Բայխենբախ աւանում: Աւարտել է Թիւբինգէնի համալսարանը: Արդէն 24 տարեկանում Մարքուարթը Գերմանիայի գիտական ազդեցիկ հանդէսներից մէկում լոյս է ընծայում իր առաջին յօդուածը՝ միանգամից ճանաչում ստանալով իբրև ներհուն բանասէր: 1897-1900 թթ. նա Թիւբինգէնի համալսարանի պրիւատ-դոցենտ էր: Ապա հրաւիրւում է աշխատանքի Հոլանդիա՝ Լէյդէնի Նիդերլանդական ազգագրական թանգարան: 1912 թ. Մարքուարթը Բեռլինի համալսարանի փոխպաշտօնական (էքստրաօրդինար) ուսուցչապետ էր: 1920-ին նշանակւում է Բեռլինի համալսարանի համեմատական լեզուաբանութեան պաշտօնական (օրդինար) ուսուցչապետ և հիմնում հայկական բանասիրութեան ամբիոն:

Չնայած Ե. Մարքուարթն ամբողջ կեանքն ապրել է չափազանց ծանր պայմաններում, թողել է անգնահատելիօրէն հարուստ և, առաւել ևս, ծանրակշիռ ժառանգութիւն, հոգևոր ու գիտական արժէքներ, որ ուղենիշ են ծառայում հայագիտութեան, իրանագիտութեան, ասորագիտութեան, սլաւոնների, խազարների, չինացիների, հունգարների, վրացիների պատմութեան այլազան խնդիրները հասկանալու և լուսաբանելու համար: Նրա հայագիտական կարևոր աշխատութիւններից են՝ «Երանշահր» (1901), «Հայկական այբուբենի ծագման մասին՝ կապուած Մեսրոպ Մաշտոցի կենսագրութեան հետ» (1917), «Հայ ազգի ծագումը և վերականգնումը» (1919), «Հարաւային Հայաստանը և Տիգրիսի ակունքները՝ ըստ յունական և արաբական աշխարհագիրների»[2]:

*

* *

Առանձնայատուկ է Մարքուարթի սէրը Հայաստանի և հայերի նկատմամբ: Կարօ Մելիք-Օհանջանեանի բնորոշմամբ իր ուսուցիչ Մարքուարթը և՛ հայագէտ էր և՛ հայասէր: Բաւարար է յիշել, որ «Markwart»-ը նա թարգմանել էր հայերէն՝ «Բդեշխեան» «...և ցանկացաւ կրել հայի ազգանուն»[3]: Իսկ որպէս գերմանացի գրում էր. «Մեր սերունդներն անտարակոյս պէտք է ամօթից շառագունեն, երբ պատմութեան գրքերում կարդան կամ հարկադրուած լինեն իրենց հարևաններից լսել այն մասին, որ Աբդուլ Համիդը, homo sapiens-ի այդ ցցուն հատանմուշը, համարձակութիւն է ունեցել իրեն կոչել գերման ժողովրդի բարեկամ»[4]: Մէկ այլ կարևոր մէջբերում. «Հայաստանն այդպէս են կոչում (Արևելեան Անատոլիա) ներկայ պատերազմում թուրքերը, որոնք վճռական նպատակ ունեն դուրս քշել բնիկ ժողովրդին»: Մի քանի էջ յետոյ Մարքուարթն անդրադառնում է

Դարանաղի գաւառում գտնուող Անի ամրոցին և ասում. «Այդ վայրն էր, որ վերջին ջիհադի՝ աղէտալի համաշխարհային պատերազմին ուղեկցող այդ խայտառակ երևոյթի օրերին՝ թրքական գիշատիչների միջոցով այնքան վշտալի անուն հանեց որպէս բազմահազար հայ կանանց և երեխաների ջարդատեղի»[5]:

Հետաքրքրական են Մարքուարթի աշակերտ Կարօ Մելիք-Օհանջան-եանի՝ իր դասախօսի մասին պատմած դէպքերը, որ գրի է առել Ռուբէն Զարեանը.

«Կազմակերպւում է Արմին Վէգների[6] դասախօսութիւնը՝ հայ ժողովրդի տարագրումը Միջագետքի անապատները: Օթեակում նստած լսում է նաև յայտնի պրոֆեսորը (Եօզէֆ Մարքուարթը): Դահլիճում լինում են բաւական թւով թուրքեր: Երբ դասախօսութեան ընթացքում Վէգները մոգական լապտերի օգնութեամբ ցոյց է տալիս զարհուրելի տեսարաններ, թուրքերն աղմուկ են բարձրացնում: Աղմկում է նաև Մարքուարթի կողքին նստած մի երիտասարդ թուրք: Հայերը և գերմանացիները փորձում են զսպել թուրքերին, որպէսզի չխանգարեն դասախօսութեան ընթացքը: Մարքուարթը կարգի է հրաւիրում իր հարևան թուրքին: Վերջինս հայհոյում է նրան և փոխարէնն ստանում մի շռնդալից ապտակ: Թուրք դեսպանի որդին անմիջապէս յայտնւում է ոստիկանի հետ և ասելով, թէ ով է ինքը, պահանջում է կալանքի առնել իրեն վիրաւորող հային, այսինքն Մարքուարթին: Մարքուարթը յայտնում է իր ով լինելը և պահանջում հեռացնել դասախօսութիւնը խանգարողներին, և ոստիկանը ենթարկւում է նրան»:

Ահա մէկ այլ դէպք:

Մարքուարթին է ներկայանում մի մարդ՝ հայկական հնագոյն ձեռագրերով: Նա ասում է, որ ինքը թուրք սպայ է և իր բերած ձեռագրերը վերցրել է Վանի մօտերքը գտնուող մի գիւղից և կամենում է վաճառել: Իրեն ուղարկել են Մարքուարթի մօտ, որ գնահատի այդ ձեռագրերը:

Մարքուարթը վրդովւում է և դուրս անում թուրք սպային. «Հայերի դժբախտութեան վրայ ուզում էք մի վայելուչ կեանք ստեղծել ձեզ համար»: Թուրք սպան դուրս գնալիս ուզում է վերցնել ձեռագրերը, Մարքուարթը թոյլ չի տալիս. «Հայերի ձեռագրերը պէտք է հայերի մօտ լինեն»:

Ու մի քանի օրից ուղարկում է ձեռագրերը Վիեննայի Մխիթարեաններին»[7]:

Ե. Մարքուարթը բազմիցս հանդէս է եկել հայ ժողովրդի պաշտպանութեամբ, մեղադրել երիտթուրքերին: Ըստ նրա՝ Սահմանադրութեան հռչակումից (1908 թ.) օսմանեան քաղաքականութեան կարգախօսը նոյնն էր. Չլինի հայ՝ չի լինի և Հայկական հարց: Մարքուարթն առաջին-

ներից էր, որ Հայոց ցեղասպանութիւնը դիտում էր որպէս Թուրքիայում քրիստոնեաների ոչնչացման ընդհանուր ծրագրի բաղկացուցիչ մաս: Մեծ գիտնականն անխնայ քննադատում էր Գերմանական կառավարութեանը, որ պաշտպանում և խրախուսում էր Թուրքերի գործողութիւնները: Առաջին աշխարհամարտից յետոյ Մարքուարթը պահանջել է դատապարտել ցեղասպանութեան մեղաւորներին, դրանց յանձնել Հայաստանի Հանրապետութեանը կամ միջազգային ատեանին: 1919-ին Մարքուարթը պնդում էր, որ Հայաստանին պէտք է միացնել Տաճկաստանի այն մասերը, որոնք գրաւած էին ռուս բանակների կողմից (1917): «Բայց մի՞թէ տաճիկների ձեռքին պիտի մնան Փոքր Հայքը..., Կիլիկիան. մի՞թէ դրանք «ծոյլ ու բարբարոս Թուրքերին ձեռքը պիտի մնան: Ո՛չ, անհրաժեշտ է, որ հանդիսաւորապէս երաշխաւորւի, հայ ազգի սեփականատիրական անկապտելի իրաւունքը իր պատմական ամբողջական հայրենիքի վրայ, մէջն առնելով Փոքր Հայքն ու Կիլիկիան»: Եւ ընդհանրապէս Մարքուարթն այն համոզմանն էր, որ տաճիկները և ռահասարակ Թրքութիւնը մարդկութեան և քաղաքակրթութեան թշնամիներ են:

*

* *

Զնայած «Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը» գրքի փոքր ծաւալին, վստահաբար կարելի է ասել, որ կատարւած աշխատանքն ահռելի է: Ինքն իր նկատմամբ խստորէն բծախնդիր հեղինակը ձգտել է համադրել հին ու նոր փաստերն ու դրանց արձագանքները, գտնել սկզբնաղբիւրները և միասնական քննութեամբ գտնել ու վեր հանել իրականը:

Ցիշատակելի է նաև բառագիտական-ստուգաբանական աշխատանքը: Զխորանալով մանրամասնութիւնների մէջ՝ կը կամենայինք միայն յիշել, ասենք, պանդուխտ և պանդոկ բառերի մանրակրկիտ դիտարկումը, որ, ի դէպ, հետագայում ընդունել է և Հր. Աճառեանը[8]:

Ցաւալի պատահարի պատճառով (1930 թ. փետրւարի 3-ին Մարքուարթը գագահեղձ եղաւ) ներկայ գիրքը կարող էր լոյս աշխարհ չգալ, մնալ անտիպ, ինչպէս հեղինակի զուտ հայագիտական բնոյթի մօտ երեք տասնեակ գրքերի մի մասը:

Սակայն թէ՛ այս, թէ՛ վերոնշեալ երեք տասնեակի անտիպ[9] մասը կազմող գրքերի կապակցութեամբ, մենք՝ հայերս, պիտի պետական հոգածութիւն ցուցաբերէինք՝ տպագրելով պատշաճ մակարդակով, եթէ ոչ անւանի հայագէտին յարգանքի տուրք մատուցելու, ապա գոնէ մեր պատմութեան և մշակոյթի բեկորները վեր հանելու համար:

Կը կամենայինք ընդգծել թարգմանիչ Էւելինա Մակարեանի կատարած գործը: Թերևս կարելի է ասել, որ նա մասնագիտացել է Հայաստա-

*նին ու Հայերին նուիրուած գերմաներէն գրքերի թարգմանութեան մէջ և կարողանում է վստահօրէն կողմնորոշուել գիտական խրթին ոճում: Այստեղ՝ իւրաքանչիւր նախադասութեան մէջ, թարգմանիչը ոչ միայն մտազբաղ է եղել փնտրուած բառի ընտրութեամբ, այլև իւրաքանչիւր միտք հայեցի դարձնելով:*

*Մարքուարթի «Հայոց եպիսկոպոսութիւնների ծագումը» գիրքը ոչ միայն Հայաստանի, այլև արևելեան շատ եկեղեցիների համար անհրաժեշտ և արժէքաւոր է: Աստծի հետ մէկտեղ աշխատութիւնում, ինչպէս Մարքուարթի բոլոր ուսումնասիրութիւններում, առկայ է աշխարհագրական, պատմական և լեզուաբանական ծաւալուն նիւթ, որը կը հետաքրքրի ոչ միայն Հայ եկեղեցու պատմութեամբ զբաղուողներին, այլև գիտնականների լայն շրջանների:*

*Գ. Մաղոյեան*

[1] *Կենսագրական տւեալները բերում ենք ըստ Գ. Աբգարեանի՝ «Յօզէֆ Մարկուարտ» («Պատմա-բանասիրական հանդէս», 1965, N 2, էջ 149-164) յօդւածի, ուր հեղինակը նշում է, որ Վ. Ֆ. Մինօրսկու* (Essai de bibliographie des travux de J. Markwart, Paris, 1930) *մատենագիտութեան մէջ ծննդեան ամիսը վրիպմամբ նշւած է յուլիսը:*

*Գերմանացի գիտնականի անունը մեր իրականութեան մէջ հանդիպում է երկու տառադարձութեամբ՝ Մարքուարթ և Մարկուարտ. առաւել ընդունելի ենք համարում առաջինը՝ ելնելով գերմաներէնի արտասանական առանձնայատկութիւնից:*

[2] Տե՛ս «Հայկական համառօտ հանրագիտարան», հատ. 3, Երևան, 1999:

[3] Տե՛ս Գ. Աբգարեանի նշւ. յօդւածը, էջ 151:

[4] Über das Volkstum der Komanen, Osttrkische Dialectstudien:-Abhandl. d. Gesellsch. d. Wissensch. zu Göttingen, N. F., Bd. XIII, N 1, Berlin, 1914, p. 192.

[5] *Տե՛ս Գ. Աբգարեան, նշւ. յօդւածը, էջ 151:*

[6] *Վէգներ Արմին Թեօֆիլ (1886-1978) ևս մի հայասէր գերմանացի, գրող, հրապարակախօս, իրաւագիտութեան դոկտոր: Բազմիցս հանդէս է եկել Հայկական հարցի պաշտպանութեամբ:1919-ին Գերմանիայի մի շարք քաղաքներում դասախօսութիւններ է կարդացել հայկական ջարդերի մասին: Մելիք-Օհանջանեանի խօսքը հաւանօրէն հէնց դրանցից մէկի մասին է: Տե՛ս «Հայկական համառօտ հանրագիտարան», հատ. 4, Երևան, 2003:*

[7] *Տե՛ս Ռ. Զարեան, «Ցուշապատում», հատ. 3, Երևան, 1981:*

8 *Տե՛ս Հր. Աճառյան, «Հայերէն արմատական բառարան», հատ. IV, Երևան, 197*

9 *Անտիպներից յիշատակելի են՝ «Հայաստանի պատմութիւն. Գ դարու սկզբի մինչև Ե դարու կէսերը», «Նորշիրական», «Պարսկահայք», «Բագրատունեաց ցե ղաբանութիւնը Մովսէս Խորէնացու և Մար Աբբասի մօտ», «Հնագոյն եկեղեցա կան պատմութիւն Հայոց (Է դարու վերջին)» (բնագիր և մեկնութիւն), «Մանազ կերտի ժողովը», «Հայերը որպէս գաղթողներ (կոլոնիստ) հին և միջին դարե րում», «Կորիւն, Վարք սրբոյն Մաշտոցի» (Թարգմանութիւն և մեկնութիւն, «Փաւստոս Բիւզանդացի» (Թարգմանութիւն և մեկնութիւն) աշխատութիւնները*

## ԱՌԱՋԻՆ ՀՐԱՏԱՐԱԿՉԻ ՆԱԽԱԲԱՆ

Պրոֆեսոր Ե. Մարքուարթի ժառանգութեանը պատկանող սոյն աշխատութիւնը վերաբերում է Հայոց եպիսկոպոսութիւնների ծագմանը՝ մինչեւ Ներսէս կաթողիկոս, եւ ներկայացնում է հայկական եկեղեցական աւանդութիւնների քննական տեսութիւնը: Սկզբում հակիրճ տեղեկութիւն է տրուած 11-րդ դարում հայ եւ աղուանից եկեղեցիների վիճակի մասին, որն առաւել արժէքաւորւում է բերուած ծանօթագրութիւնների շնորհիւ:

Ձեռագիրը կազմում է 117 էջ եւ սկզբից մինչեւ վերջ ընթանում է առանց գլուխների բաժանման: Չկայ գլխակարգութիւն: Այս հանգամանքը, ինչպէս նաեւ, ամբողջ նիւթի կառուցուածքն ու նոյնատիպ բառերի նկարագրութեան եւ թարգմանութեան տարբերութիւնները այն տպաւորութիւնն են թողնում, որ աշխատանքը տպագրութեան պատրաստ չի եղել: Կը խնդրէի ընթերցողներին գրքի գնահատման հարցում նկատի ունենալ այս պարագան:

Այսուհանդերձ, կարծում եմ, աշխատութեան հրատարակումը ցանկալի կը լինի, որովհետեւ, բացի այն, որ Մարքուարթի՝ յատկապէս Հայաստանի մասին ուսումնասիրութիւնը, ուր նրա իրաւասութիւնը, ինչպէս նաեւ սկզբնաղբիւրների քաջատեղեակութիւնն ու արժէքաւորումը համընդհանուր ճանաչում ունեն, պակաս կարեւոր չէ եւ պարունակում է բազմաթիւ նոր ու խորաթափանց մտքեր, որոնք ներկայացուել են գիտական շրջանակներին, թէեւ ոչ բոլոր յետեւութիւններն ունեն նոյն արժէքը: Համենայն դէպս դրանք հետաքրքիր են եւ կը խթանեն այսուհետ Հայ եկեղեցու սկզբնաւորման պատմութեան լուսաբանմանը եւ կը նպաստեն աղբիւրներում պատմականի ու աւանդականի տարանջատմանը: Սա մի աշխատանք է, որը ոչ միայն Հայաստանի, այլեւ արեւելեան շատ եկեղեցիների համար անհրաժեշտ եւ արժէքաւոր է: Աւածի հետ մէկտեղ աշխատութիւնում, ինչպէս Մարքուարթի բոլոր ուսումնասիրութիւններում, առկայ է աշխարհագրական, պատմական եւ լեզւաբանական ծաւալուն նիւթ, որը կը հետաքրքրի ոչ միայն Հայաստանի եկեղեցիների պատմութեամբ զբաղւողներին, այլեւ գիտնականների լայն շրջաններին:

Ձեռագրից հնարաւոր չէ եզրակացնել, թէ երբ է աշխատանք
գրել: Գրութեան ժամանակի վերաբերեալ նաեւ բանաւոր որեւէ տե
ղեկութիւն չունեմ ոչ միայն անձամբ Մարքուարթից, այլեւ ուրիշնե
րից: Օտար անունների գրելաձեւից (Մարքուարթը յաճախ է փոխու
դրանց գրելաձեւը) կարելի է կարծել, որ աշխատանքը գրել է մօտա
ւորապէս 1920 թ., մի ժամանակաշրջան, երբ հեղինակը գործնակա
նում զբաղուած էր Հայաստանով: Հաւանաբար ուսումնասիրութիւն
մասն էր կազմելու Հայաստանի պատմութեան ծաւալուն աշխատու
թեան, որը նախատեսուած էր, բայց, ցաւօք, այլեւս հնարաւոր չէ իրա
գործել:

Պապական արեւելագիտական ինստիտուտը աշխատութիւն
ընդգրկել է իր մատենաշարում, հրատարակման ուշացումը (լոյս է
տեսնելու այս տարուայ սկզբին) պէտք է ընդունել ներողամտու
թեամբ: Դժուար ընթեռնելի ձեռագրի՝ յատկապէս հայերէն բառեր
վերծանման հարցում ինձ օգնել է իմ գործընկեր պրոֆ. Ֆր. Յորելը
իսկ Ու. Հոլցմայսթերի հետ կարդացել ենք տպագրական մամուլնե
րը: Ես իմ ջերմ շնորհակալութիւնն եմ յայտնում նրանց:

**Հռոմ, 1 սեպտեմբեր, 1932 թ.**

**Ջուզեպէ Մեսինա Ս.Ի**

## ՀԱՅ ԵՒ ԱՂՎԱՆԻՑ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ 11-ՐԴ ԴԱՐՈՒՄ

Մատթէոս Ուռհայեցին ուշագրաւ տեղեկութիւն է հաղորդում 11-րդ դարի Հայ ազգային եկեղեցու արտաքին վիճակի մասին.

«Յայսմ ամի (հյց. 514=5 մարտի 1065 - 4 մարտի 1066) մեռաւ ամենանազովելին Տէր Խաչիկ կաթողիկոսն Հայոց, սա կեցեալ յաթոռ հայրապետութեան զամս վեց յոտար աշխարհի, պանդխտեալ յիշխանութիւնն Յունաց[1] եւ բարւոք քաղաքավարութեամբ լցեալ զժամանակս կենաց իւ - րոց. եւ բազում վիշտս կրեաց ի յանիրաւ եւ ի մոլի ազգէն Հոռոմոց ի մէջ Կոստանդնուպոլսի, որ եւ ի պէսպէս փորձութիւնս ածէին զնա վասն հաւատոյ. զի այսպէս լսելով մեր՝ եթէ հրով փորձեցին զնա, եւ նա անվնաս անցանէր ընդ մէջ հրոյն, զոր նոցա զայրացեալ՝ եւ առաչօք[2] ասէին զայն: Եւ այսպէս օրինակաւ սուգ ունէր Տէր Խաչիկ ի սրտի իւրում. եւ յիշեալ զաւերումն հայրապետական աթոռոյն տանն Հայոց, նաեւ զխափանել աթոռոյ բազաւորութեանն յազգէն Բագրատունեաց եւ զալ ծառայել չարամիտ ազգաց Յունաց, եւ աղքատութեամբ տիրապէս ել[3] յաթոռոյ սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին. վասն զի յորժամ էր Տէր Պետրոս յաթոռ հայրապետութեանն եւ ի Հայաստան աշխարհին, ունէր կազմութիւն հայրենեաց՝ ունեալ ի թագաւորացն Հայոց՝ հինգ հարիւր գեղ անուանի եւ մեծանիստ եւ շահաւէտ ընտիր ընտիր, նոյնպէս եւ եպիսկոպոսս հինգ հարիւր փառաւոր եւ գաւառապետս[4] ի վերայ եօթն հարիւր[5] քեմի (οὐαρί) հանապազ. երկոտասան եպիսկոպոս եւ չորս վարդապետ[6] ի տանն հայ - րապետին եւ վարսուն երէց ի կրօնաւորաց՝ եւ յաշխարհականաց՝ հինգ հարիւր. եւ չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զթագաւորու - թեանն Հայոց: Նաեւ զարդարանք եկեղեցեացն եւ տանն հայրապետու - թեանն բազում եւ անհամար եւ հրաշալի մեծութեամբ լցեալ, որ առաջին թագաւորացն ունեալ հաստատութեամբ առաջին հայրապետացն. որ զայր հասանէր մինչեւ ի Տէր Պետրոս եւ առ նովաւ խափանեալ լռման: Արդ՝ զայն ամենայն զմտաւ ածէր Տէր Խաչիկ եւ տեսանէր ի տառա - պանս զհայրապետական աթոռն Հայոց եւ կայր յոյժ վիրաւորեալ»[7]:

Արիստակէս Լաստիվերտցին վկայում է, որ Պետրոս կաթողիկոսը շատ զանձատէր էր, որի համար շատերը պախարակում էին նրան: Այդ զանձերի պատճառով Կոստանդին Դուկաս կայսրը, առնելով Խաչիկ

կաթողիկոսի (1060-1065) հաստատման լուրը, պատգամաւորներ
ուղարկում եւ նրան ու գանձերը, որ գտնւում էին թէ՛ այդտեղ (Սեբա
տիայում), թէ՛ Հայաստանում, բերել է տալիս իր մօտ՝ Կոստանդնուպ
լիս[8]. Պետրոսը (1019-1060)[9], իր անիրաւ դրամասիրութիւնից դրդւա
ցանկանում էր հայկական թագաւորութեան անկման շրջանում Հայ
կաթողիկոսութեան ունեցւածքը շահադիտական նկատառումներով բ
լատրելի եւ անգամ պատիւ չբերող միջոցներով բազմապատկել՝ գե
զանցելով իր նախորդներին, ինչն այն ժամանակ կաթողիկոսար
խնամիական միջավայրում բաւական ընդունւած էր[10]: Վստահօրէն
րելի է ասել, որ հայ եկեղեցին քաղկեդոնական հռոմէացիների եւ մու
ման սելջուկ հորդաների կատարած գերեզմանակրկիտ աշխատան
առաջ էլ յիրաւի հարուստ էր եւ հզօր, որ հաստատւում է նւիրատուութ
ների պահպանւած վաւերագրերով:

Իսկ ինչ վերաբերում է կաթողիկոսին ենթակայ եպիսկոպոսներ
թեմերի կարծեցեալ թւին, ապա այն. ընթերցողի մօտ ճշմարիտ զարմ
է յարուցում եւ թւում է, թէ վաւերագրողն այստեղ «խոշորացոյց» է
տագործել: Դիւլորիէն սրանից օգտւել է այսպէս. նա եւ **զաւառապե**
ինչպէս նաեւ **զաւառատեսուչս** արտայայտութիւնը, որն, անշուշտ, պ
է դիտել **եպիսկոպոսի** բացայայտիչը, թարգմանել է «ou chorévêqu
Եթէ նոր հրատարակութիւնում թեմերի թիւը 700 է (Է հարիւր) ա
Hss ABC-ում եւ Երուսաղէմի հրատարակութիւնում՝ նախապէս
(Ե հարիւր) է:

Ճիշտ այդպիսի զարմանալի մի տեղեկութիւն է տալիս Մատթէոս
81=65 Աղւանքի եկեղեցու մասին: Պարսից ամիրա Ապու-Սւարի[11] ւ
րիչ յարձակման ժամանակ (հաւանաբար 1040 թ.) Աղւանքի, այսի
Տաշիրքի թագաւոր Դաւիթ Անհողինը դիմում է Աղւանքի Յովսէփ կա
ղիկոսին. «... եւ ահա արժան է եւ իրաւունս ամենայն հաւատացելոց
դէմ որոյ երթալ եւ մեռանիլ ի վերայ քրիստոսական հաւատոցն: Արդ
ղովեա զամենայն եպիսկոպոսունսդ Հայոց աշխարհիդ որ յԱղւանս
եւ ի բանակ այսր հասիր, զի ընդ մեզ մեռանիջիք»: Զոր եւ արար իս
երկերիւր եպիսկոպոսօք գնայր Տէր Յովսէփն ի բանակն քրիստոնէից
գրեաց եւ ի վանորայսն առ հարսն զալ միաբան ամենայն կրօնաւոր
ի զօրս հաւատացելոց, եւ ժողովեաց զամենայն քահանայս Աղւանից
խարհին եւ զսարկաւագունս» եւ այլն (Մատթ., էջ 80-81=65-66):

Դժւար է պատկերացնել, թէ որտեղ էին նստում այդ 200 եպիսկոպ
ները, երբ Շաւանը հարեւան երկրների հետ 10-րդ դարի առաջին կէ
արդէն մեծ չափով բնակեցւած էր մուսուլմաններով եւ գտնւում էր իս
ընդունւած հարստութեան իշխանութեան տակ[12]: Իսկ Տաշիրքի
Դաւթին սկսած հյց. 438 թ.=989/90՝ Վերին Հայաստանի եւ Առանի

քուրդ Ֆադլուն իրն Մանոճիհրը[13], նրա մահից յետոյ վերջինիս եղբայր եւ յետնորդ Աբուլ Ուսուարը նեղելով յափշտակել էին տիրոյթների մեծ մասը: Նոյն կերպ Ֆադլունը Գրիգոր Փահլաւունի իշխանի մահից յետոյ (hjg. 452 թ.=21 մարտի 1003 - 19 մարտի 1004) նրա որդուն՝ Փիլիպեին, դաւաճանաբար շղթայելով, խլում է նրանից Շաւաղն[14] ու Շաւրքը՝ արդէն իր տիրապետութեան տակ ունենալով Պարտաւն ու Շամքորը[15]:

Անշուշտ Միջագետքի թեմի հայազգի իշխաններ Մլեհի, Չմշկիկի (Յովհան Կուրկուաս), նրա նշանաւոր եղբօրորդի Չմշկիկի /Յովհան Չմշկիկ/, հետագայում՝ կայսր Կիւռ Ժան Κῦρις Γιάννης եւ Նիկեփոր Փոկասի, որոնք սերում էին նախկին Դեգիկ (Τεκηζ)[16] գաւառից, ռազմական փառապանծ սխրանքներից ի վեր հայկական տարրը արագ տարածուել էր նոր գրաւուած մարզերում, ինչպիսիք էին Մելիտենէն, Յանձիթը, Ծամնդոսը (Ծամնդաւ), Լիւկանդոսը (Լափաքա), Կիլիկիան եւ Հիւսիսային Սիրիան[17], այնպէս որ այդ երկրամասերում եւս առաջանում են եպիսկոպոսութիւններ, ինչպէս այդ մասին վկայում է Ստեփանոս Ասողիկը՝ III, ԼԱ, էջ 258=196, 14-19. «Իսկ յաւուրս Տեառն Խաչկայ հայարպետին Հայոց սփեռեալ տարածեցաւ ազգս Հայոց զկողմամբքն արեւմտից, մինչեւ ձեռնադրել նմա եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց եւ ի Տարսոն Կիլիկեցւոց եւ ի Սուլնդայ[18] եւ յամենայն գաւառսն յայնոսիկ»[19]: Հայերի գաղթի մի նոր հոսանք հեղեղեց Տաւրոսի երկրներ եւ Սիրիա, ինչպէս նաեւ Փոքր Հայք, երբ 1016 թ. Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը վախենալով թուրքերից, իր երկիրը վաճառեց Բարսեղ Երկրորդ կայսրին: «1300 թ.[20] սկսւում է հայ ժողովրդի գաղթը Մեծ Հայքից, նախ դէպի Կապադովկիա: Յատկապէս, երբ Բարսեղ կայսրը հայերից խլեց Սենեքերիմ թագաւորի երկիրը եւ դրա դիմաց ւոեց Սեբաստիան՝ Կապադովկիայում, նրանք, այնտեղ շատանալով, տարածուեցին ամբողջ Կապադովկիայով, Կիլիկիայով եւ Սիրիայով մէկ»[21]:

## II
## ՀԱՅՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

### 1. Ներսէսի եւ Գրիգորի ժամանակը

Դառնալով Հայ եկեղեցու սկզբնաղբյուրին՝ «Պատմութիւն սր Ներսիսի Պարթեւի» բնագրում գտնում ենք այն ազնւականների ւ պիսկոպոսների ցանկը, ովքեր ուղեկցում էին սուրբ Ներսէսին Կեսա օծելու: «Ընդ նոսին եւ եպիսկոպոսք մեծաքորք.

1. զԳրիգոր եպիսկոպոս Սիւնեաց
2. զՓառէն եպիսկոպոս Վրաց
3. զԹաթուլ եպիսկոպոս Տարօնոյ
4. զՅովսէփ եպիսկոպոս Բագրատունեաց
5. զՔաջաջ եպիսկոպոս Մարդպետական
6. զԱմոս եպիսկոպոս Բզնունեաց
7. զՆերսէս եպիսկոպոս Մոկաց
8. զՇապուհ եպիսկոպոս Արծրունեաց
9. զԱրեստոմ եպիսկոպոս Անձեւացեաց
10. զՎահան եպիսկոպոս Մամիկոնէից
11. զՋաւէն եպիսկոպոս Ցուրտաւայ
12. զՏրդատ եպիսկոպոս Բասենոյ
13. զԳնել եպիսկոպոս Մեղիտենեայ

եւ այլ հնգետասան եպիսկոպոսք՝ որ պատրաստեցան ընդ իշխանս

Վարքագրական այս թերի գործում, սակայն, խօսում է նաեւ ու այսինքն՝ կոմանների[23], աղեղնաւորների (աղեղնաւորք), այսինքն ջուկների[24] արշաւանքի եւ հռոմէացի, որ ֆրանկ են կոչում, ժողու կողմից, Երուսաղէմի վերագրաւման մասին[25]: Բնագրում օգտագ ւած են ինչպէս Կեղծ Մեթոդիոսի եւ Յովհաննէս Կոզեռնի (հմմտ. Մւ Ուռհ. 52-54, 67-74=53-60, 230=193), այնպէս էլ Յովհաննէս Սարկա երկերը, եւ համապատասխանաբար վերամշակւած է Ներսէսի ան (Փաւստ. IV, ԺԳ, էջ 114, 2-4, 18-35, ԺԵ, էջ 123, 14-124, 3, IV, ԾԱ, էջ 36-167, 9: Ղազար Փարպ. էջ 11, 18-31, 22, 28-29, 23, 2-4, 25, 2-6, 1 4, հրատ. Թիֆլիս, 1904=32, 14-18, 69, 2-7, 24-70, 3, 76, 21-77, 5, 78, 3-

8 հրատ. Վենետիկ, 1891)։ Ինչպէս ցոյց է տալիս Էմինը եւ ինչպէս վըստահաբար կրկնում է Վ. Բոուսեթը (Beiträge zur Geschichte des Eschatologie: Zs. f. Kirchengeschichte XX, 1900, էջ 118), այս գործը ստեղծուել է ոչ թէ 5-րդ, այլ 12-րդ դարում։ Այն առաջին անգամ յիշատակում են Մատթէոս Եդեսացին եւ նրա պատմութեան շարունակող Գրիգոր քահանան[26]։ Բացի այդ, հեղինակն ինքն է իրեն մատնում՝ բարձրաստիճան հոգեւորականների շարքում յիշելով նաեւ Մելիտենէի եպիսկոպոսին։ Մելիտենէն մտնում էր Հռոմէական կայսրութեան մէջ, ուստի այդ մարզի եպիսկոպոսը պաշտօնապէս կապ չունէր Հայկական թագաւորութեան եպիսկոպոսների հետ։ Մելիտենէում հայկական եպիսկոպոսութիւն ստեղծուել է 11-րդ դարում[27]։ Ներսէս կաթողիկոսի օրօք Մելիտենէի աթոռին յոյն եպիսկոպոսներ էին, որոնց անունները էին Ուրանիոս եւ Օտրեիոս[28]։ Անանունի եպիսկոպոսների ցանկը առաւել անվաւեր է, քան հայ ազնուականների նրա երկար ցուցակը (էջ 32-38=Langlois II 25b-26b)։

Փաւստոսը եւս վկայում է այդ մասին (IV, Դ, էջ 72). «Ապա գումարեցին զիշխանսն մեծամեծս, զի առցեն զցանկալին Ներսէս, եւ գնասցեն ուր սովոր էին զհայրապետսն օծանել։ Նա եւ բազմութիւն եպիսկոպոսացն Հայոց ժողովեցան առ թագաւորն վասն նորին խնդրոյն. խոնարհել ամենեցուն միով միաբանութեամբ զնա ընտրել հաճոյ թւեցաւ ամենեցուն, զի նստեսցի նա յաթոռ գլխաւորութեանն։ Ամենեցուն միաբանութեամբ եպիսկոպոսացն եւ թագաւորին եւ աշխարհաժողով ձուլիւք հաւանութեամբ ի միասին արձակեցան եւ գնացին»։ Ապա յաջորդում են առաքուած ազնուականների անունները, որոնց թւում, սակայն, ոչ մի եպիսկոպոս չի յիշատակւում։

Ուխտանէս Եդեսացին (10-րդ դարի վերջ) գրում է, որ երբ Գրիգոր Լուսաւորիչը նստեց Մեծ Հայքի կաթողիկոսական աթոռին. «Եւ եպիսկոպոսք՝ որ ձեռնադրեցան ի նմանէ՝ աւելի քան զչորեք հարիւր եպիսկոպոս՝ տեսուչք տեղեաց տեղեաց։ Գլուխ Հ. Յաղագս եպիսկոպոսաց՝ որք ընկալան աթոռ ի տեղիս տեղիս ի սրբոյն Գրիգորէ յիւրաքանչիւր գաւս։

Արդ յայսմ վայրի զաթոռակալս շարադրեցից եւ յայտ արարից զիւրաքանչիւր գաւս՝ որպէս Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի է կարգեալ եւ եղեալ զսեփական աթոռընկալ եպիսկոպոսացն զկարգս»։ Այնուհետեւ թւարկւած է 30 եպիսկոպոսութիւն, որոնց մի մասը, սակայն, յիշատակւում է 6-րդ դարից, եւ կը քննարկւեն աւելի ուշ։ Վերջում ասում է. «Այս երեսուն եպիսկոպոսք՝ որք աթոռակալութեամբ ընկալան ձեռնադրութիւն ի սրբոյն Գրիգորէ, եւ այլ եւս երեք հարիւր եւ ութանասուն եպիսկոպոսք, որ եւ նոքա կարգեցան ի տեղիս տեղիս տեսուչք եւ Առաջնորդք յիւրաքանչիւր գաւառս ի փառս Աստուծոյ»[29]։

Այս վերջին տեղեկութիւնը յենում է Ագաթանգեղոսի վրայ՝ պարբ. 856. «Եւ բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս Հայոց իշխանութեան իւրոյ. եւ որ յաստիճան եպիսկոպոսութեան ձեռնադրեցան ի նմանէ՝ աւելի քան զչորեքհարիւր եպիսկոպոս, որք կացին տեսուչք տեղեաց տեղեաց: Իսկ կարգք երիցանց կամ սարկաւագաց կամ անագնովսաց, եւ որ այլ եւս ի պաշտօն Տեառն կացին՝ անթիւք էին ի բազմութենէն»[30]: Կեղծ Զենոբ Գլակը նախ օգտւում է Ուխտանէսից, ապա առարկում, որ թեմերի թիւը աւելի մեծ է եղել. «Չի գիտէիք,- գրում է Տրդատ թագաւորը Նիւսարայի եպիսկոպոս Եղիազարին եւ ազդենացիների եպիսկոպոս Տիմոթէոսին,- եթէ ամենայն գաւառացս եպիսկոպոսս պիտոյ են եւ քահանայս: Չի թէպէտ ոմանք, որք ուստէք ուստէք եկեալ են ժողովեալ, բայց զի՞նչ են այսորիկ առ վեցհարիւր եւ քսան գաւառս Հայոց, որ եւ գաւառին մէն մի քահանայ կամ լուկ թէ հանդիպի»[31]:

Բացի այս ընդհանուր հաղորդումներից, Ագաթանգեղոսը պարբ. 845 տալիս է ճիշտ տեղեկութիւն. «Եւ դարձեալ բազում եւ անհամար գունդս գունդս վանականաց ի շէնս եւ յանշէնս, դաշտականս շինակեացս, եւ լեռնականս անձաւամուտս եւ արգելականս հաստատէր [Գրիգոր]»[32]: Եւ զոմանս յորդւոց քրմացն առեալ իւր՝ զառաջեաւասունս ձեռնասունս առնէր. փոյթ ուսման ի վերայ ունէր՝ ընդ հոգեւոր խնամով եւ երկիւղիւ սնուցանել[33]: Որ յաստիճան եպիսկոպոսութեան լինէին արժանի կալոյ, առեալ ձեռնադրութիւն ի նմանէ. որոց առաջնոյն Աղբիանոս[34] անուն, որ ապա կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու, երկրորդին՝ Եւտաղիոս[35], որ ի կողմանս վայրացն Բասենոյ կացեալ լինէր հովիւ, երրորդն՝ Բասոս, չորրորդն՝ Մովսէս, հինգերորդն՝ Եւսեբիոս, վեցերորդն՝ Յովհաննէս, եօթներորդն՝ Ագապէս[36], ութերորդն՝ Արտիթէս[37], իններորդն՝ Արտւկէս[38], տասներորդն՝ Անտիոքէս[39], մետասաներորդն՝ Տիրիկէս, երկոտասաներորդն՝ Կիւրակոս[40]: Այսք՝ որ յորդւոց քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց, աճեցուցանել զքարոզութիւնն: Եւ զայլոցն անուանս թէ եւ կամիցի ոք՝ ոչ կարասցէ շարել»[41]:

Հետաքրքիր է, որ վերջին երկու անուններն բացակայում են ոչ միայն յունարէն թարգմանութեան մէջ, այլեւ հայերէն գրեթէ բոլոր ձեռագրերում: Դրանք կան փարիզեան մի ձեռագրում եւ յունարէնից արաբերէն թարգմանուած. «Հայերի, վրացիների, աբխազների եւ ալանների մկրտութիւնը սուրբ Գրիգորի կողմից» աշխատութիւնում[42]: Դժւար չէ տեսնել, որ այդ անունները վերցւած են Փաւստոսի վերջին գրքից. Տիրիկեսը Բասէնի եպիսկոպոս **Տիրիկն** է (տես. Տիրկան), Կիրակոսը՝ Տայքի եպիսկոպոսը, որ կոչւում էր նաեւ Շահաղ[43]:Նրանց պաշտօնավարման ժամանակը համընկնում է Հայաստանի երկրորդ բաժանման հետ, եւ նրանց թեմերը սահմանակցում էին Հռոմէական Հայաստանին: Ինչպէս

վաւերացրել է մետրոպոլիտ Սիմէոնը Քաղկեդոնի ժողովում, Տիրիկ է կոչւել նաեւ Ամիդի պաշտօնեաներից մէկը, եթէ լատինական հրատարակութեան Tyricio, Tyrecio արտասանական ձեւերը նախընտրելի են յունական տեքստերի (Mansi VIII 165, 166) Σηρικίου-ից: Նոյն անունն ունի Բագրեւանդի եպիսկոպոսը, Ներսէս Երկրորդ կաթողիկոսի օրօք (554/5) Գիրք Թղթոց, էջ 70, սակայն էջ 73՝ Տիրակ: Հմմտ. Hübschmann, Die altarmenischen Personennamen. Festschrift für Roth (Stuttgart, 1893), էջ 104: Ութերորդ՝ Բասէնի եպիսկոպոս Արտիթէսը այստեղ հանդէս է գալիս Արտիթ (սեռ. **Արտաթայ**) ձեւով: «Սա աշակերտեալ մեծին Դանիէլի՝ որ էրն յամս Տիրանայ[44] արքայի, եւ կենդանի կայր յամսն Խոսրովու արքայի եւ Արշակայ, երկուց թագաւորացն Հայոց»[45]: Դիոնիսիոս Թրակացու Քերականութեան թարգմանութեան մէջ էջ 28, 23 **-իթ**-ը տոհմանւան վերջաւորութիւն է, ինչպէս **Գ-ն-իթ**, Կորիւն, էջ 27, Փաւստ. III, ժԲ, էջ 29, **Մաներ** Դիոն. Թրակ. նոյն տեղում, **Զու-իթ** (ըստ **Ճառընտիրի** AB in Z. Arm. Ph. II 276 **Զուի-իթ**, սեռ. Զուիթայ)՝ քահանայ Արտաշատից, Փաւստ. IV, ԾԵ, էջ 177, ԾԶ, էջ 179, ԾԷ, էջ 180, **Տիր-իթ**՝ Հայոց Արշակ թագաւորի եղբօրորդին, Փաւստ. IV Ե, էջ 92, ժԱ էջ 107, ժԵ էջ 119-120, 124-126: Սակայն **մարդիթ**-ը mard-it ըստ այդ նոյն Քերականութեան, էջ 34, 3-4 նշանակում է «գեր մարդ» եւ համեմատելի է յուն. Περικλῆς-ի հետ:

Այնուհետեւ աչքի է զարնում մեկուսի հանդէս եկող Արսուկէս անունը: Եթէ փնտրենք, ապա Փաւստոսի մօտ (IV, ժԲ, էջ 111) կը գտնենք Աւրուկ անունը, որը համապատասխանում է վերջինիս: Բագրեւանդի եւ Արշարունիքի Խաղ եպիսկոպոսին են վերաբերում հետեւեալ տողերը. «Եւ էին նորա երկու դստերք. եւ ետ զմինն Աւրկոյ ումեմն կին, եւ զկնի անեռոյն իւր՝ նա կալաւ զաթոռն Խադայ»[46]: Խադի եւ Աւրուկի պաշտօնավարման ժամանակը համընկնում է Արշակ թագաւորի կառավարմանը: **Աւրուկ**-ը **աւր**-ի սեռ. **աւրու** կամ (աւելի հին) **աւրւ**-ի «փոքր» -**ուկ**-ով կազմւած փաղաքշական ձեւն է, ինչպէս Այր-ուկ Եղիշէ 77 **այր** «մարդ» Ταυτούκας=Դաւթ-ուկ. Դաւիթ, **Յեհն**-ուկ, Մատթ. Ուռհ. 144, յուն. Ἰαχνούκας. Jowhan, Παγκρατούκας **Բագրատ**-ուկ. Բագարատ, **հատուկ** «հավի ճուտ», բառացի՝ «փոքրակ» Dionys. Thrax., էջ 20, 20: Հմմտ. Hübschmann, Die altarmenischen Personennamen. էջ 101, ծնթ. 8: Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 55/6, ծնթ. 1: Հետաքրքիր է, որ հայերի, վրացիների, աղւանների եւ ալանների առաքելական դարձի անուանուն հեղինակը, պահպանել է Աւրուկի եպիսկոպոսութեան ճիշտ տեղը: Նա ասում է. «...եւ [Գրիգորը] Ἀρσύκην-ին դարձնում է եպիսկոպոս եւ ուղարկում Ծիրաք (Ծիրակ) գաւառ»:

Ծիրակ գաւառը Արշարունիքի հետ Կամսարական տոհմի հայրենա -

կան կալւածքն էր[47]: 4-րդ դարի երրորդ քառորդին, սակայն, այդ երկիրը Բագրեւանդի հետ կազմում էր մի եպիսկոպոսութիւն: Համանարար հենդինակն այստեղ օգտւել է նաեւ աւանդութիւնից:

Նրան առաւել քիչ յաջողւել է որոշել միւս չորս բարձրաստիճան հոգեւորականների նստավայրերը: «Եւ նա 'Αρτίθην-ին դարձրեց եպիսկոպոս եւ ուղարկեց Μαλχαζῶν երկիր՝ իրենց ἄρχων جان ارزنی-ի հետ. 'Αντίοχον -ին եւս դարձրեց եպիսկոպոս եւ ուղարկեց قردلت Քարդալիտ երկիր. Τιρίκιον-ին նոյնպէս դարձրեց եպիսկոպոս եւ ուղարկեց 'Ατραπατακάν երկիր: Κυριακόν-ին եւս դարձրեց եպիսկոպոս եւ ուղարկեց 'Αρσαμουνίων (Արշամունիք) երկիր»: Արշամունիքը գտւում էր Տուրուբերան նահանգում եւ տարածւում էր Արմանց լեռների, այժմ՝ Բինգեօլ դաղ, շրջանում, տե՛ս Hübschmann, Die altarmenischen Ortsnamen. էջ 327, 322, Ղազար Փարպ., Թիֆլիս, 1904, էջ 149, 1, 22-23=516, 11, 518, 10, Սեբէօ. Աս. III, ԽԳ, էջ 276, 8: Արշամունիքի եպիսկոպոսութիւնը գոյութիւն է ունեցել 6-րդ դարի սկզբներից[48]: Մաղխազունիքը Խորխոռունիք գաւառի մէկ այլ անւանումն է, որը նոյնպէս գտնւում էր Տուրուբերան նահանգում: Հմմտ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանեայց (Վենետիկ, 1822), էջ 131 եւ յաջորդներ: Նաեւ Archäologie des Landes Armeniens, II, Venedig, 1835, էջ 139 եւ յաջորդներ, 173: Հիւբշման, նոյն տեղում, էջ 330: Աղաթանգեղոսի յունարէն թարգմանութիւնում (էջ 69, 53) գրւած է ἄρχων ὁ τοῦ Μαλχαζιῶν οἴκου=**իշխանն մաղխազութեան տանն**. պարբ. 795, էջ 414, 16=597, 19: جان ارزنی Gaȓgoil աղաւաղւած ձեւն է: Խորխոռունիքի եպիսկոպոսութիւնը եւս գոյութիւն է ունեցել միայն 6-րդ դարի սկզբներից[49]: جاروزیل-ը համանարար قردلت =Κορδ(ου)ιτῶν-ի գրութեան սխալ ձեւն է. Ագաթ. յուն. 68, 48=**կորդովտաց**, պարբ. 795, էջ 414, 9, Թիֆլիս=597, 4, Վենետիկ, յուն. 77, 72=**կորդուաց**, պարբ. 842, էջ 440, 2=628, 9: Հմմտ. Մառ, էջ 206: Ատրպատականի եպիսկոպոսութիւնը գոյութիւն է ունեցել 7-րդ դարից սկսած:



Մի պահ կանգ առնենք. մեզ մնում է, չհաշուած թիւ 10-ը, հնչիւնափոխութեան չենթարկուած, եօթ զուտ յունական, ինչպէս նաեւ աստուածաշնչային անունների մի խումբ: Ի՞նչ յիշատակութիւն կայ դրանց մասին այլ աղբիւրներում:

Աղբիանոս եպիսկոպոսի մասին գրուած է. պարբ. 846 «Եւ զԱղբիանոս զայր ճշմարիտ եւ աստուածասէր՝ վերակացու բոլոր արքունական դրան բանակին»[50]: Հեթանոս կայսեր նկատմամբ Կոստանդիանոս կայսրի յաղթանակի եւ քրիստոնէութեան՝ որպէս պետական կրօն բարձրացման լուրն առնելով՝ «մեծ արքայն Հայոց Տրդատ՝ խորհուրդ առնոյր վասն ճանապարհացն այնցիկ, հանդերձէր, կազմէր առնոյր ընդ իւր զմեծ արքեպիսկոպոսն զԳրիգորիս եւ զնորին որդի զԱրիստակէս[51] եպիսկոպոս եւ զմիւս եպիսկոպոսն զԱղբիանոս»: Ապա հետեւում է քաղաքի շքախումբը կազմող հրամանատարների ու իշխանների ցանկը, որը, սակայն, եթէ անգամ հին աղբիւրից է վերցուած, չի կարող նախնական լինել, քանի որ այնտեղ, ինչպէս նաեւ Փաւստ. IV, Ծ, էջ 163 եւ V, Թ, էջ 214, Նորշիրականի, այսինքն Աղիաբենի բդեշխը համարւում է Հայաստանի թագաւորի վասալը եւ սխալմամբ Ասորեստանի կողմի սահմանակալը, այսինքն Աղձնիքի բդեշխը տարբերակուած է Արւաստանի (Բէթ Արաբայէ՝ Նիսիբիս մայրաքաղաքով) կողմի բդեշխից[52]: Ցաւօք, Տրդատի այս այցի մասին, որն աւարտւում է դաշինքի կնքմամբ (պարբ. 877=յուն. 84, 21-25), այլ տեղեկութիւն չունենք:

Նիկիայի ժողովում, որին մասնակցում էր 318 հոգեւորական, հայերն ունէին իրենց ներկայացուցիչը, եւ այդ մասին նրանք պահպանել են փոքր-ինչ առասպելախառն յիշողութիւն. «Ապա յետ այսորիկ հրաման ետ մեծ կայսրն, օգոստականն Կոստանդիանոս՝ ժողովել ամենայն եպիսկոպոսաց ի քաղաքն Նիկիացւոց: Յայնժամ մեծ արքայն Տրդատ եւ սուրբ կաթողիկոսն Գրիգորիոս հանդերձեցին եւ արձակեցին զԱրիստակէս, որ երթեալ հասանէր ի մեծ ժողովին Նիկիայ ընդ եպիսկոպոսսն ամենայն, ուր ամենայն տիեզերաց կարգեցաւ ընդունելութեան ուղղութեանն հաւատոյ եւ կարգք լուսաւորութեան, կանոնք պայմանաւորք, աստուածատուր զօրութիւն հաճոյիցն Աստուծոյ անչափ բարձրութեանցն: Ուր եւ մեծ կայսրն Կոստանդիանոս մտեալ խոստովան լինէր զհաւատսն եւ օրհնութեամբ պսակեալ ի ժողովոյն՝ զանուն յերկրի բոլոր եւ զարդարութիւն յերկինս հաստատէր:

Իսկ երանելին Արիստակէս զայր պայծառ ծագեալ հաւատովքն եւ հաստատուն աստուածահաճոյ նիկիական կանոնօքն երեւել ի Հայաս-

տան երկրին. եւ առաջի դնէր բազատրին եւ կաթողիկոսին սրբոյ՝ գրեբեալ աւանդութիւնսն: Որով սրբոյն Գրիգորի ի նոյն լուսաւոր կանոնսն յաւելեալ, առաւել եւս զիւր վիճակն, զՀայաստան երկիրն, պայծառացուցեալ, հանդերձ միաբանութեամբ արքային Տրդատայ՝ զամենայն աւուրս կենաց իւրոց լուսաւորէր»[53]:

Փաւստոս Բուզանդը նոյնպէս պատմում է Նիկիայի ժողովի մասին. «...եւ սա [Մծբինի Յակոբ եպիսկոպոսը] դիպեցաւ ի մեծ սիւնհոդոսին ի Նիկիա, որ եղեւ յամս Կոստանդիանոսի կայսր Հոռոմոց, որ[54] ժողովեցան երեք հարեւր եւ ութեւտասան եպիսկոպոսօք. վասն անիծեալ աղանդոյն Արիանոսի Աղէքսանդրացւոյ, որ էր ի նահանգէ[55] անտի Եգիպտոսի: Արդ[56] ամենայն եպիսկոպոսքն նստէին առաջի Կոստանդիանոսի. եւ ի Հայոց էր անդ Արիստակէս, որդի Գրիգորի սքանչելոյ՝ առաջի[57] կաթողիկոսին Հայոց մեծաց»: Ապա հետեւում է հրաշքի մասին պատմութիւնը, երբ Յակոբին երեւում է կայսրը: Այս մասին պատմում է նաեւ Ագաթանգեղոսը, պարբ. 871[58]:

Փաւստոսի պատմութիւնը ծագում է Մար Յակոբի մասին սիրիական աւանդութիւնից եւ պատմական արժէք չունի: Ստոյգ է, որ Յակոբ եպիսկոպոսը ժողովին չի մասնակցել: Ինչ վերաբերում է Ագաթանգեղոսի վկայութեանը, որ Արիստակէսը Նիկիայի կանոնները Հայաստան է բերել, մեծ մասամբ քաղուածք վերցուած է Կորիւնից, ուր ասում է. «Որոյ յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոյն, եւ բազում շնորհազիր հարց յետ այնր աւանդութեամբք, եւ նիկիական եւ եփեսոսական կանոնօք[59] գային[60] երեւելով աշխարհին Հայոց, եւ առաջին դնէին հարցն զբերեալ կտակարանսն եկեղեցւոյ սրբոյ»[61]: Եթէ իսկապէս Արիստակէսն է Նիկիայի կանոնները բերել, ապա դրանք 5-րդ դարի երկրորդ քառորդին Հայաստանում կամ այլեւս չէին գործում, կամ անվաւեր էին: Այն, որ Արիստակէսը իսկապէս մասնակցել է ժողովին, անվերապահօրէն կարելի է ապացուցել Նիկիայի հայրերի ցուցակով, որն, անկասկած, բերուած է հաւաստի աղբիւրից: Այնտեղ գրուած է[62].

'Αρμενίας μεγάλης
106. 'Αριστάκης 'Αρμενίας
107. 'Ακρίτης.

Այն փաստը, որ այս երկու անունները մի փոքր աւելի ուշ հայկական ազդեցութեամբ ընդմիջարկուել են ցանկում, միաժամանակ բացառուած է, քանի որ 'Ακρίτης անունը 5-րդ դարի կէսերին սկզբնաղբիւր հայկական աւանդութիւններում լիովին անծանօթ է:

Գրիգորի աւագ որդին՝ Վրթանէսը, աշխարհիկ կեանք էր վարել եւ ապա նոր քահանայութեան եկեղեցական աստիճան ընդունել: Երկրորդ որդին՝ Արիստակէսը, ղաստիարակւել էր աստուածապաշտական ծառայութեան համար եւ նւիրւել էր միայնակեցութեան[63]: Երբ Գրիգորը հրաժարւեց թողնել ճգնարանները, մշտապէս մնալ Տրդատ թագաւորի մօտ եւ ուղեկցել նրան իր ճանապարհորդութիւնների ժամանակ, վերջինս հրամայեց շտապ իր մօտ բերել նրա երկու որդիներին: Պատիրակները «Արդ՝ եկին հասին նորա յաշխարհն Կապադովկացւոց եւ գտին զՎրթանէս ի Կեսարացւոց քաղաքին, եւ զսուրբն Արիստակէս բնակեալ յանապատի, յիւրում մենաւորաստանին. ապա ոչ հաւանէր նա իջանել յանապատէ անտի, մինչեւ եղեւ ժողով բազմութեան քրիստոնէից, որք հաւանեցուցին զնա գնալ անտի. զի «Լաւ է, ասեն, քեզ գործ մշակութեանն Աստուծոյ՝ քան զայդ մենաւորութիւն բնակութեան յանապատի այդր»[64]: Զորս (Գրիգորի որդիներին) այնուհետեւ եւ յուղարկեցին զնոսա անտի: Իսկ նորա կրկին հասին յերկիրն Հայոց, եւ յանդիման ունէին զածեալսն, զերկոսին որդիսն Գրիգորի, առաջի թագաւորին. զորս առեալ թագաւորին՝ ինքնին նորօք հանդերձ ի խնդիր ելանէր սրբոյն Գրիգորի՝ ուր եւ գտցէ: Եւ եկեալ գտանէին ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանեայ Այրք, յանապատին:

Ապա աղաչեաց երանելի թագաւորն Տրդատ զսուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր, զի ոչ հաւանեցաւ նա կալ եւ շրջել ընդ նմա, եւ սիրեաց զմենաւորութեան կեանս՝ ձեռնադրեսցէ եւ տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որդին իւր, զոր եւ ածել ինքն՝ զԱրիստակէս: Զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր. որպէս ըստ գրեցելոյն ի ղէպ, թէ «Փոխանակ հարց եղիցին որդիք՝ կալ իշխան ի վերայ երկրի» (Սաղմ. ԽԴ 17): Որ առաւել եւս քան զհայրն վերագոյն երեւեցուցանէր զիւր վարդապետութիւնն առ հարքն, եւ եւ նորա կալաւ զտեղի հայրենեացն եւ անդէն նստաւ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց Մեծաց: Ապա եւ ինքն իսկ մեծն Գրիգորիոս «ելանէր զտեղեօքն կարգելովք եւ զգաւառօքն աշակերտելովք յաշխարհին Հայոց՝ զւարթացուցանել, զօրացուցանել, նորոգել եւ հաստատել զամենեսեան[65]: Իսկ մեծ արքեպիսկոպոսն երանելին Գրիգորիոս, սուրբ որդւովն իւրով Արիստակիսաւ եւ ամենայն երեւելի օգնականօքն, զամենայն աշակերտովքն շրջէր, եւ հաստատէր զնոսա՝ կալ ի պատուիրանին ճշմարտութեան»[66]:

Սրանով լիովին պատճառաբանւում է Նիկիայում Գրիգորի փոխարինումը նրա որդի Արիստակէսով: Այնինչ, հիմնւելով հայկական աւանդութեանը, յանձին Ἀχρίτης անւան պէտք է տեսնել աւելի շուտ Աղրիանոս եպիսկոպոսին:

Արիստակէսի մասին Փաւստոսն ունի նաեւ հետեւեալ վկայութիւնը:

Մեծ քահանայապետ Գրիգորի՝ Հայաստանի Լուսաւորչի եւ նրա որդու[67]՝ սուրբ Արիստակէսի եւ նրանց շիրիմների մասին:

«Արդ ի թագաւորութեանն Տրդատայ՝ որդւոյն Խոսրովու, լուսաւորութեամբ հաճոյական սիրով եւ աստուածպաշտութեամբն հաւատոյ, ծանօթութեամբ ի ձեռն Գրիգորի՝ որդւոյն Անակայ, մեծի քահանայի, եւ որոյ ընդ նմին կրտսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեան զամենայն աւուրս կենաց իւրոց մինչեւ յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ[68]: Իսկ սոցա պատրաստեցան տեղիք բնակութեան, եւ արժանի եղեալ շիրիմք հանգստեան. եւ մեծին Գրիգորի ի Դարանաղեաց գաւառին, ի գիւղն՝ որ անուանեալ կոչի Թորդան. եւ սրբոյն Արիստակայ որդւոյ նորա՝ յետ խոստովանութեան մահուն իւրոյ, եւ տարան զնա ի Ծոփաց գաւառէ, եւ եդին զնա յԵկեղեաց գաւառի ի Թիլն աւանի, ի կալւածս Գրիգորի, հօրն իւրոյ»[69]:

*

* *

Փաւստոսը մի չափազանց կարեւոր տեղեկութիւն է հաղորդում Աղբիանոս եպիսկոպոսի մասին:

«Յաղագս երկուց տոհմիցն՝ որք անզգամեցան ի մէջ Հայաստան աշխարհին, վասն Մանաւազեանցն եւ Որդունեաց:

Եւ զայնու ժամանակաւ (Խոսրով Երկրորդ թագաւորի օրօք) յարեաւ խռովութիւն մեծ [մեր] յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք եւ իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անկանէին[70] ընդ միմեանս մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ, եւ տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց հրամանաց: Եւ պղտորէին [մեր] զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանաւազեան տոհմին, եւ միւս եւս նահապետն Որդունեաց տոհմին: Կուեցան ընդ միմեանս մեծաւ պատերազմաւ եւ բազում մարդկան լինէր ծախումն կոտորածոյ: Ապա առաքեցին թագաւորն Խոսրով եւ մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպատուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս ի մէջ նոցա, խօսել ի հաշտութիւն խաղաղութեան: Երթեալ հասանէր ի մէջ նոցա երանելին Աղբիանոս զնոսա ուղղել նուաճել՝ ընդ միմեանս հաշտեցուցանել: Անարգեցին զնա, եւ ոչ լուան բարեխօսութեանն եկելոյն, անգոսնեցին զյղելիսն, եւ մեծաւ թշնամանօք արձակեցին զեպիսկոպոսն, եւ առնին աւերէին զտունն արքունի: Եւ զայրացեալք խստութեամբ հալածէլ տային ընդ միմեանս մարտ պատերազմի: Ապա մեծ ցասմամբք եւ բազում սրտմտութեամբ արձակեաց թագաւորն ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետ Մամիկոնեան տոհմին յազգէ սպարապետութեան Հայոց, զմեծ զօրավար զօրաց իւրոց, սատա-

կել կորուսանել զազգն երկոսեան: Ապա երբեալ հասանէր ի վերայ նոցա զօրավարն Վաչէ, հարկանէր վանէր զազգսն երկոսեան, եւ ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն եւ ոչ զմի. եւ ինքն դառնայր առ արքայն Խոսրով թագաւորն Հայոց, եւ առ եպիսկոպոսապետն Վրթանէս: Եւ ետ զաւանն եւ զբուն գահոյից զեւղն նահապետին Մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի յեկեղեցի. զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն եւ զաւառական հանդերձ՝ որ շուրջ զնոքօք էր, որ կայ ի կողմանս զետոյն Եփրատայ[71]: Եւ ետուն զբուն զեւղն Որդունւոց, որոյ անուն էր Որդորու[72], ուստի եպիսկոպոս Բասեանու[73] ամենայն սահմանօքն հանդերձ, որ ինքն իսկ է յերկրին Բասեանու»[74]:

Այս արժէքաւոր տեքստը միանշանակ վկայում է, որ Աղբիանոսն ու Եւսաղիոսը, որոնք կանգնած էին Գրիգորի օծած եպիսկոպոսների գլուխ, այնուամենայնիւ, սեփական թեմ ունեցող եպիսկոպոսներ չէին: Նրանք թեմ ստացան միայն Խոսրով Երկրորդ թագաւորի օրօք, որպէս լրավճար: Այդ նպատակին ծառայեց Մանաւազեան եւ Որդունի նախարարական տների տոհմական վէճը, որի հետեւանքով արական սեռի անդամները սրի մատնեցին, իսկ նրանց ունեցւածքը տրուեց նորաստեղծ եպիսկոպոսութիւններին: Եթէ այս երկուսը իսկական եպիսկոպոսներ չէին, անկասկած մնացած հինգը առաւել եւս: Կաթողիկոսութի՞ւնն էր շատ աղքատ, որ իր կալւածքներից եպիսկոպոսութիւններին բաժին չէր հանում: Հազիւ թէ: Փաւստոսը չի զլացել այդ կէտը եւս պարզաբանել.

«Յաղագս Հայր մարդպետին (ներքինապետ), յորժամ եկն էջ ի գաւառն Տարօնոյ՝ եթէ զիարդ եկն եւ ի տեղի աղօթիցն Աշտիշատ, կամ զիարդ դատապարտեալ գնաց անտի յիւրոց բերանոցն ի խօսիցն, կամ զիարդ անկեալ, մահուն պարտ եղեալ, սատակեցաւ ի Շաւասպայ Արծրունւոյ:

Եւ էր մարդպետն Հայր այր չար եւ ժանտաբարոյիւր[75] անօրէն եւ անիրաւ քան զառաջին Հայր[76] անուն մարդպետսն: Սա կոտորեաց զամենայն ազգս նախարարացն ի ժամանակս թագաւորութեանն Տիրանայ արքայի[77]. եւ սոյնպէս առ թագաւորութեամբն Արշակայ՝ եւս չար քան զառաջինն գործել չար առ ամենայն մարդ: Արդ ելանէր սա շրջէր ընդ մարդպետութիւնն իւր. ապա եկն էջ Հայր մարդպետ ի գաւառն Տարօնոյ ընդ իւր գեւղսն[78] տեսանել:

Զայնու ժամանակաւ. սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն[79]. զի հնգետասան գաւառ զայն, ձեռական իշխանութեան ունէին իբրեւ սեպհական ի բնէ, առանձին առողջի[80] նոցա էր կարգեալ: Եւ յայն գաւառ գլխաւոր գաւառք այս էին՝ Այրարատ, Դարանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք եւ որ ընդ մէջ նոցա եւ որ շուրջ զնոքօք:

Եկն էջ եւ Հայրն մարդպետ զիւրով իշխանութեամբն շրջել. ապա եկն եւ սուրբ կաթողիկոսն Ներսէս յառաջին տեղին, ուր նախ էր զեկեղեցին շինեալ ի Գրիգորէ, եւ զվկայարանսն սրբոցն զվկայիցն, եւ անդ զյիշատակս սրբոցն կատարէր: Ապա դէպ եղեւ անցանել Հայր մարդպետին առ տեղօքն, ցանկացաւ ելանել ի սուրբ տեղիսն Աշտիշատու կալ յաղօթս, եւ առնուլ ողջոյն ի սրբոյ եպիսկոպոսապետէն Ներսէսէ: Ապա իբրեւ կային[81] յաղօթս, եւառն ողջոյն. հրաման տայր սուրբ հայրապետն Ներսէս, եկեղոցն[82] ճաշ պատրաստել: Եւ մինչ դեռ նոքա պատրաստէին ինչ ըստ նմա արժանի աւագօրէն սպաս, նա ելանէր յեպիսկոպոսական կայանէն յապարանիցն մինչեւ ի վկայարանս սրբոցն. ի մեծ եւ ի գեղեցիկ հրապարակին զերթեւեկս առեալ շրջէր, զճեմս առեալ: Ապա տեսանէր զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղացն եւ զնայեացն ի խոնարհ, զի կարի վայելուչ էր տեղին. եւ չարակնեաց:

Ապա եմուտ բազմեցաւ յուտել եւ ըմպել: Իսկ յորժամ արբեցաւ սխալականեցաւ, սկսաւ ներքինին խօսել բանս հպարտս եւ ամբարտաւանս յարբելեաց՝ դնէր բշնամանս Տրդատայ արքայի, ի մեռեալս եւ կենդանեացն ի կեանս ազգի եւ տակի եւ տոհմի Արշակունեաց բազաւորացն Հայոց: Զիա՞րդ, ասէ, զայսպիսի տեղիս կանացահանդերձ մարդկանս տեալ է [Տրդատ], եւ ոչ արանց: Եւ զսուրբ տեղեօքն քամահեալ արհամարհէր, եւ ասէր՝ եթէ զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի: Եւ թէ ես Հայր մարդպետ կենդանի իցեմ եւ առ բազաւորսն հասից, ասէ, որ ինչ աստ իցէ, զայն ի բաց փոխեցից. եւ որ աստ իցեն, ասէ զնոսա հանից, եւ զտեղիս՝ արքունի սենեակ կազմեցից:

Իսկ սուրբ եպիսկոպոսապետն յորժամ լսէր, եւ ասէ՝ եթէ տէր մեր Յիսուս Քրիստոս, որ ընտրեաց նախ զայս տեղի՝ դնել զանուն իւր աստ, որոյ անունն առ հասարակ ընդ ամենայն տեղիս փառաւորեալ է Հարբն եւ սուրբն Հոգովն հանդերձ, որ պատուիրեաց մի՛ ամենեւին յայլոյ ինչ ակն դնել կամ ցանգալ[83]. իսկ որք ժլատեալք ի նորա նւէրսն բերեն աչս, եւ այնմ ցանկան, վասն այսորիկ նա մի՛ հասցէ առ այն՝ որով սպառնացաւն, այլ խափան լիցի իւր յառջեւ նմա բազում մակարդ մեղացն իւրոց գործելոց»[84]: Ուրեմն սեփական հողատարածքների սակաւութիւնը չէր, որ խանգարում էր Գրիգորին եպիսկոպոսութիւններ հիմնելու: Այստեղ հարցն այն էր, որ ուշադրութիւնը ժամանակաւորի վրայ աւելի խիստ չէր, քան հոգեւորի:

*

* *

Մանաւազակերտի (Ապահունիք) եպիսկոպոսները հետագայում եւս (4-րդ դար) մեծ դեր են խաղում: Եպիսկոպոսութիւնը ժառանգաբար

պատկանում էր Աղբիանոսի ընտանիքին, ինչպէս կաթողիկոսութիւնը՝ Գրիգորի: Աղբիանոսն ու նրա յետնորդները, ինչպէս Գրիգորն ու նրա շառաւիղները, ամուսնացած էին: Երբ Յուսիկի սպանութիւնից յետոյ նրա որդիներ Պապն ու Աթանագինեսը, որոնք Գրիգորի ծոռներն էին, «տարի սակ ուեցին Աստծո քահանայապետութիւնը», եւ երբ Յուսիկի յետնորդ Փառէնը (Փառ Ներսեհ) կարճ ժամանակ անց մահացաւ, հայրապետ նշանակւեց մի ոմն Շահակ, որն Աղբիանոս եպիսկոպոսի սերընդից էր (Փաւստ., III, ԺԷ, էջ 45 եւ յաջորդներ): Իսկ երբ Պապ թագաւորի կողմից թունաւորուած Ներսէս կաթողիկոսի մահից յետոյ աթոռը կրկին որբացաւ, «կացոյց թագաւորն Պապ զՅուսիկ եպիսկոպոս, որ էր ի զաւակէ Աղբիանոս եպիսկոպոսին Մանազկերտոյ: Եւ հրաման ունել նմա զտեղի հայրապետացն, իշխել փոխանակ նորա՝ զոր սպան, եւ էր նա փոխանակ նորա» (Փաւստ., V, ԻԹ, էջ 232 եւ յաջորդներ):

Հայաստանի երկրորդ բաժանումից յետոյ պարսկական մասում ըսկըզբնապէս եպիսկոպոսների գլուխ կանգնած էր Զաւէնը. «անուանի զաւակ Աղբիանոս եպիսկոպոսի ի գեղջէ Մանաւազակերտոյ» (նոյն տե - ղում, VI, Բ, էջ 271): Երկրորդը, որ փոխարինեց եպիսկոպոսների գլխաւորին, եղաւ «Ասպուրկ ոմն ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի», որն առաջնորդում էր Խոսրով Երրորդ թագաւորի արքունիքում (նոյն տեղում, VI, Դ, էջ 272, ԺԵ, էջ 279 եւ յաջորդներ):

Խոսրով Երրորդ թագաւորի օրօք Պարսկահայաստանում Բասէնի եպիսկոպոսներն էին.

1. Արտիթ, մի պատուական եւ պիտանի ծերունի: «Սա աշակերտեալ մեծին Դանիէլի՝ որ էրն յամս Տիրանայ արքայի, եւ կենդանի կայր յամսն Խոսրովու արքայի (Երրորդ) եւ Արշակայ (Երրորդ), երկուց թագաւորացն Հայոց» (նոյն տեղում, VI, Է, էջ 274):

2. Մովսէս եւ

3. Տիրիկ

«Եւ էին երկու եպիսկոպոսք Բասենայ զաւառին, Մովսէս եւ Տիրիկ արք լաւք հրեշտակակրօնք, սուրբ հաւատացեալք, հրաւիրմանն արժանիք: Առաջնորդէին իւրաքանչիւր ժողովրդոց ի ճանապարհն Աստուծոյ զամենայն կենաց իւրեանց» (նոյն տեղում, IV, ԺԴ, էջ 279):

2. Խադ, Բագրեւանդի եպիսկոպոս

Պատմութեան ընթացքով առաջ շարժւելով՝ հանդիպում ենք Բագրե - ւանդի Խադ եպիսկոպոսին:

«Յաղագս Խադայ եպիսկոպոսի Բագրաւանդացւոց, զոր էր ձեռնադըրեալ[85] եւ թողեալ էր Ներսէսի տեղապահ յիւր տեղի[86] եւ թէ[87] որպիսի այր էր. եւ կամ որչափ նշանք կամ զօրութիւնք որ ի նմանէն լինէին[88]. կամ թէ որպէս կայր ի ճշմարտութեանն, եւ ոչ առնոյր ակն թագաւորին մեծի

Արշակայ[89], եւ ընդդիմանայր եւս ընդդէմ նորա վասն անօրէնութեան գոր-ծոց ինչ. կամ որպէս խնամ տանէր աղքատաց[90], իբրեւ զեպիսկոպոսա-պետն[91] Ներսէս:

Այրս այս Խադ բուն էր սայ ի Կարին գաւառէ, ի գեղջէ Մարագայ. ձեռնասուն էր սա եպիսկոպոսապետին Ներսէսի, զառաջեաւ իւրով զսա էր սնուցեալ: Այլ իբրեւ ի միտս աջողակս երեր, եւ յառաջադէմ եղեւ ի հա-ւատս, եւ հաւատարիմ յամենայն գործ զտաւ, իսկ իբրեւ յայնմ եւս առա-ւել ի պաշտօնն՝ զոր ունէր զսէրն ընդ եկեղեցին Աստուծոյ, ապա աղքա-տաց եւս տեսչութիւն ի սրբոյն Ներսէսէ սմա հաւատացաւ. իսկ յայնմ եւս առաւել զքարեխնամութիւն ցուցանէր:

Ապա եպիսկոպոսապետն Ներսէս յորժամ երքայր յուղեգնացութիւնն յերկիրն Յունաց, ձեռնադրեաց զայս Խադ յեպիսկոպոսութիւն[92] Բագրա-ւանդայ եւ Արշարունեաց, եթող զսա իւր փոխանակ տեղապահ, եւ գնաց: Իսկ աշխարհ ամենայն Հայոց լեզւին, ի գաւառաց գաւառաց, կող-մանց կողմանց, տեղեաց տեղեաց մեծամեծք աշխարհակալք գաւառա-տեարք նահպետք մեծազգեացք[93] եւ ամենայն ուխտ քահանայութեան, ժողովք միաբանական ժողովրդոյն, ի սուգ տխրութեան ընկղմեալ էին վասն իւրեանց հօտապետ գլխաւորին. զի հեռացաւ ի նոցանէ: Իսկ սուրբն Խադ եպիսկոպոսն առ հասարակ աշխարհի տայր հրաման ի պահս եւ յաղօթս մտանել եւ ի խնդրուածս, զի դարձ լիցի սրբոյն Ներսէսի: Եւ զամենայն ժամանակս, որչափ եւ արգելաւ նա անդ, համակ խնդրէին պահօք ժողովուրդքն. եւ ամենայնի իսկ Խադն առաջնորդէր նոցա, ոչ ինչ պակաս քան զիւրեանց բուն զհովւապետն Ներսէս. մինչեւ ի գալուստն նորա. մինչեւ կատարեաց Տէր զաշխարհի խնդրուածս, եւ դարձաւ սուրբն Ներսէս ի տեղի իւր:

Զայնու ժամանակաւ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կարի ի ճանա-պարհ Աստուծոյ գնացեալ լինէր. զի որչափ ի մատաղութեանն հասակին ըստ աստուածային իմաստութեանն գնացեալ լինէր, նոյնչափ յաւագու-թեանն ի լինութեան ի շաղաշատութեան հատաւ. զոր սուրբ հովիւն Խադ բազում անգամ յանդիմանեալ կշտամբէր, որում ոչ ինչ անսացեալ լինէր:

Զայնու ժամանակաւ իւր արքայն դաստակերտ մի ի հովիտն անա-նեալ ի Կոգ գաւառի (այսինքն՝ Կոգայ-հովիտ): Եւ հրաման ընդ ամե-նայն գաւառս իշխանութեան իւրոյ. եւ հրամայեաց կարգել քարոզ ընդ ամենայն տեղիս աշխարհացն հրապարակին իւրոյ, եւ ամենայն կող-մանս գաւառաց իւրոց լի առնէր հրամանաւն արքունի, զի եթէ որ ումեք ինչ պարտիցի, եթէ որ ուրուք ուստեք ինչ վնասեալ իցէ, կամ որ ումէք ինչ դատ պարտիցի, ամենեքեան եկեսցեն ի դաստակերտն շինեսցին: Եթէ արիւնահան որ իցէ, կամ վնաս ուրուք ումեք արարեալ իցէ, կամ զկին ու-րուք տարեալ իցէ, կամ պարտապան իցէ, կամ որ զուրուք կարասի ունի-

ցի, կամ որ յումեքէ երկիւղած ինչ իցէ, եւ եկեսցէ յայն տեղի, դատ եւ իրաւունք մի՛ լիցին: Իսկ եթէ որ ումեք ինչ պարտիցի եւ որում պարտիցին, եկեալ յայն տեղին՝ առանց դատի եւ իրաւանց կալցին, եւ ի դուրս տարցեն:

Իբրեւ եւ հրաման յարքայէն, ժողովեցան այնուհետեւ յայն տեղի ամենայն զօրք եւ աւազակք, արհեստաւորք, ապաժողք, սուտք եւ մարդելոյզք, վնասակարք, գանձահատք, զրկողք, ստաղատք, զրախօսք, գերփողք, յափշտակողք, ժլատք: Բազում վնասս վնասս առնէին, եւ անդր անկանէին, բազում կանայք զարս թողին, եւ անդր անկանէին, բազում արք զիւրեանց կանայս թողին, եւ զայլոյ կանայս առեալ՝ անդր անկանէին, բազում ծառայք զիւրեանց տէրանց զգանձս ըմբռնեալ, փախուցեալք անդր անկանէին, բազում աւանդառուք զաւանդս լի զպահեստս բարձեալ, անդ անկանէին, գերփէին աւերէին զերկիրն ամենայն: Ձի թէպէտ եւ կարի յոյժ բազմացաւ աղաղակն, դատ չկայր, եւ իրաւունք ումեք յարքունուստ ոչ եւլանէին: Վասն այսորիկ ամենայն մարդ հառաչելով վայէին[94] եւ ասէին ի հաւանել բանիցն իւրեանց. այս բարք ըստ այսմ օրինակի պաշտէին, առ հասարակ ամենեցուն ասելով՝ թէ իրաւունք մեռան[95] եւ վասն այսորիկ ոչ գտանէին. այլ թէ էր[95] եւ կորուսեալ էին, ուր եւ էր[95] ջանայաք խնդրեաք գտանեաք:

Իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր. մեծացաւ, բազմացաւ եւ ելից զհովիտն ամենայն: Ապա տայր հրաման արքայն Արշակ դնել անուն դաստակերտին յիւրակից անունն Արշակաւան. եւ շինեցին եւս անդ ապարանս արքունի: Եւ յայնմ հետէ ոչ ինչ երկնչէին ի Տեառնէ ամենեւին, եւ ամենայն մարդ զրկեալ էր իրօքն այնորիւք, եւ բազմաց հառաչ աղաղակի տրտնջելոյն յաճախեալ բազմանայր: Վասն որոյ բազում անգամ ընդդիմանայր նմա եւ յանդիմանէր սուրբն Խադ եպիսկոպոսն. մանաւանդ յորժամ ստիպէին զնա, թէ եկ ուղղեա սեղան յեկեղեցւոջն յաւանն յԱրշակաւանն: Իսկ նա բազում անգամ կշտամբէր եւ յանդիմանէր զթագաւորն Արշակ եւ զամենայն մեծամեծս եւ զիշխանս: Բայց ես, ասէ, եւեղապահ եմ. եւ ոչ ինչ առանց այնորիկ, որ[96] թողն[97] զիս հայրն, ունիմ իշխանութիւն գործել ինչ: Ապա կամեցեալ Արշակ թագաւորն պատրուաւ եւ ագահութեամբ կարասայն մեքենայիւ (μηχανή) խաբել զսուրբ եպիսկոպոսն Խադ, բազում ոսկի եւ բազում գանձս արծաթոյ, եւ բազում նժոյգս (նժոյգ) զարքունական ձիոյ՝ արքունի օճառովք (աճառք) ոսկիվարաւանդ[98] ապրդմովն, տայր նմա. պատրել հանել զմիտս նորա, յինքն յանգուցանել: Իսկ նա զկարասին, զոր առնոյր յարքայէն, յանդիման նորա աղքատաց բաշխէր, եւ զյանդիմանութիւնն ոչ ինչ թուլացուցանէր, մինչեւ հրամանն տայր [թագաւորն] հալածեր զեպիսկոպոսն Խադ ի բանակէ անտի:

Իսկ նա առ շրջել ընդ աշխարհն, կարգել եւ խրատել, ուսուցանել եւ դարմանել զաղքատսն, որպէս էր նմա յանձն արարեալ սրբոյն Ներսիսի, եւ իւր գնացեալ: Բազում նշանք եւ արուեստք եւ զօրութիւնք բժշկութիւնք հիւանդաց լինէին ի ձեռս նորա. բազում յոյժ առնէր սքանչելիս մեծամեծս: Բայց իբրեւ պաշտէր զաղքատսն, եւ սպառէր թափէր զամենայն յուրանս եւ զնորամանս եւ զմառանս զինւոյն, եւ զկարասս ամենայն մառանացն տայր բաշխել աղքատացն, երբայր յայլում աւուր տեսանէր լցեալ ինքնին իբրեւ ի հրամանէ Աստուծոյ. եւ դարձեալ օր ըստ օրէ մատակարարէր աղքատացն, եւ այն ստէպ ստէպ լցեալ լինէր:

Այսպիսի սքանչելիք մեծամեծք լինէին ի ձեռն առնս այսորիկ. էր սա զարմանալի անուանի եւ հռչակաւ ի մէջ ամենայն Հայոց, շրջէր խրատէր եւ ուսուցանէր զեկեղեցիս Հայոց ընդ ամենայն տեղիս իբրեւ զիւր վարդապետն զՆերսէս: Բայց ի ժամանակեան միոջ եկին զօրք, եւ զօրացան զեզինս եկեղեցւոյն սրբոյ զԽադայ եպիսկոպոսին, առին եւ գնացին: Իսկ ի միում աւուր աչք կուրացեալ եղեն զօրացն, եւ ինքեանք յանիմաստս առ խարխափս եկին ածին ի դուրս սրբոյն Խադայ զամենայն եզինսն: Իսկ ինքն սուրբ Խադ ելեալ տեսանէր զնոսա. եւ գոհանայր զՏէառնէ՝ որ այնչափ վերակացու եւ այցելու եղեւ հաւատացելոց իւրոց: Կայր յաղօթս եպիսկոպոսն Խադ. եւ բժշկէր զաչս զօրացն, եւ հրամանս տայր լանալ զանձս նոցա. եւ դնէր ճաշ առաջի նոցա, եւ բաջ ուրախ առնէր զնոսա մեծապէս: Ապա օրհնէր զնոսա. եւ տայր նոցա զեզինսն՝ զոր իւրեանցն էր զօրացեալ, եւ արձակէր զնոսա զիւրեանց ճանապարհն. եւ գնացին: Այսպէս բազում համբերութիւնս յամենայն գործս իւր ցուցանէր. եւ բազում առնէր նշանս եւ զսքանչելիս: Եւ էին նորա երկու դստերք. եւ ետ զմինն Աարկոյ ումեմն կին, եւ զկնի աներոյն իւր՝ նա կալաւ զաթոռն Խադայ»[99]:

Երբ Ներսէս կաթողիկոսը վերադարձաւ իր այսպէս կոչուած աքսորից, «ի վերայ հասանէր իւրում եռեղապահին սրբոյն Խադայ, զի էր կացեալ ի ճշմարտութեան եւ յուղղութեան, եւ գնացեալ էր զճանապարհս Տեառն Աստուծոյ. եւ ոչ էր թիւրեալ յաջ կամ յահեակ, բազում գոհութիւնս մատուցանէր Աստուծոյ, զի զԽադ զհոգեւոր որդեակն իւր եգիտ ըստ կամացն՝ որպէս ինքն կամէր. զնա անձկով տեսանէր: Այլ յորժամ լսէր ի Խադայ զամենայն զանօրէնութիւնս չարութեանն ծոռ զնացիցն թագաւորին, արամէր, լայր, ողբայր եւ կոծէր մեծամեծ հեծեծանօք, մանաւանդ վասն քաղաքին Արշակաւանին, զի անօրէնութեամբ եւ չարութեամբ եւ յափշտակութեամբ շինեցաւ բազում մեղօք»[100]:

Նաւասարդի մեծ տօնի նախօրէին «... տօն դիպեցաւ յիշատակին մեծին Յովաննու[101], որ ի Դրիզորէ եւ ի Տրդատայ յաւանին Բագաւանին (Բագրեւանդում) կարգեալ էր: Ապա յայնմ յիշատակ աշխարհաբնակք

մարդկան՝ որ ժողովեալն էին, եւ բազում եպիսկոպոսք՝ որ յայլոց գաւառաց. եւ ապա մեծ եպիսկոպոսապետն Ներսէս փոխանակ իւր յղեաց զիւր աթոռակիցն զԽադ, եւ զիւր արքիղիակոնն եպիսկոպոսին (ἐπίσκοπος)[102]՝որում անուն Մուրիկ կոչէր. զի երթիցեն նորա, պէտք զինչ եւ իցեն ժողովոյն՝ ընդ նորա վճարեսցեն: Եւ ինքն անդէն մնաց յարքունական բանակին (Շահապիւանում), զի զնոյն հաղորդութեանն եւ անդ կատարեսցին»[103]: Այդ առնի ժամանակ թագաւորի բանակում պատանի Դնելը ենթարկւում է մահապատժի (29 օգոստոսի 359 թ.):

Խադ եպիսկոպոսը Պապ թագաւորի օրօք եւս եղել է Ներսէս կաթողիկոսի տեղապահը: Թագաժառանգն անուղղելի արւամոլ էր, եւ երբ տարւում էր իր սիրելի աերիմանական զործերով, դեւերը օձերի կերպարանքով դուրս էին զալիս թագաւորի ծոցից եւ փաթաթւում նրա ուսերին[104]: «Բայց յորժամ հայրապետն Ներսէս մտանէր առաջի նորա կամ սուրբ եպիսկոպոսն Խադ, դեւքն չերեւեալ աներեւոյթ լինէին»[105]: Խադի փեսան՝ Աթոսկը, փոխարինում է նրան Պապի մահից յետոյ:

*

* *

Խադ եպիսկոպոսն անտարակոյս առաջին հայ եպիսկոպոսն է, որի հաւաստիութիւնը վկայում է նաեւ յուշարձանը: Հռոմէական աշխարհաքարտէզի վրայ Արտաշատ-Սատաղ ճանապարհին Raugonia-ից (Geogr. Rav. II 4 p. 49, 14 Ragauna, II 9 p. 63, 10 Ragaunia) արեւմուտք նշած են հետեւեալ կայարանները.


Ragaunia
Colchion XXIIII
» Chadas XXIIII (Rav. II 12 p. 74, 9 Chadas).
Armanas XVII
» Andaga XII (Rav. p. 74, 10 Andacas, Bandachas).

Chadas եւ Andaga կայարանները, ինչպէս Raugonia-ն եւ Artaxata-ն նշւած են երկու աշտարակներով, որ հաստատում է դրանց՝ կայազորով ամրացւած վայր լինելը: Ռ.Կիպերտը (Formae orbis antiqui Taf. V, 1909, տեքստ) Raugonia-ն տեղադրում է Պարանատում՝ Կողբից եւ Սուրմալուից (Սուրմարի) արեւմուտք, ինչպէս նաեւ Էլբշիմազում՝ Կարսից հարաւ-արեւմուտք. Կոնրադ Միլլեր (Itineraria Romana, Stuttgart, 1916, սիւնակ 677 եւ քարտէզ 242 սիւնակ 745 /6/)՝ Բայազէդում (Լինչի քարտէզում՝ Bayazid Agha՝ Բերկրիից հիւսիս), Սոյուք-սու գետի ափին: Նրանք երկուսն էլ բացայայտ սխալւում են: Isumbo-ն, որտեղ Tigranakert-Zanse-

rio (Rav. Zancerion) Cymiza (Rav. Dimiza)- Dyzanas (Rav. Dizanas)-Patansana (Rav. Patransana)- Vastauna (Rav. II 9 p. 63, 17 Bastavena)-Molchia (Rav. Maia)-Dagnevana (Rav. Dognavana)-Flyoana ճանապարհը սուր անկեամբ թեքւում է ձախ, իմ կարծիքով, համընկնում է Ծումբ գիւղին, որը գտնւում է Ապահունիքում, Արճէշից հիւսիս-արեւմուտք, ոչ շատ հեռու[106]: Jsumbo-Raugonia ճանապարհահատուածը անտեսուած է եւ փոխարինուած (Cobdi)-Nasabi-Antebo-Sovae-Catispi-(Artaxata) գծի սխալ կրկնութեամբ: Այնինչ այստեղ նշուած է Arsania կայարանը, որը Rav. II, 4 p. 49, 15 տեղադրուած է Ragauna-ի եւ Isumbo-ի միջեւ, եւ որն անշուշտ ոչ մի կապ չունի Nabarra-ի (Nararra, աղիւսակ) եւ Sardera-ի (Sardebar, աղիւսակ) միջեւ գտնւող Arsania-ի հետ (p. 50, 12): Անուան հիմքում ակնյայտօրէն ընկած է Arsanias (հայ. Արածանի) գետանունը, այստեղից նաեւ՝ ad Arsaniam[107]: Արսանիաս գետի ակունքները փաստօրէն գտնւում են Արճէշից հիւսիս-հիւսիս-արեւելք, Նպատ (այժմ Ալա դաղ) լեռան լանջերին:

Raugonia-ին պէտք է համապատասխանի կենտրոնական դիրք ունեցող վայր. ի նկատի ունենք այն ժամանակւայ Հայկական թագաւորութիւնը բաժանումից առաջ, և դա Բագաւանն է, այժմեան Ուչ Քիլիսան՝ «երեք եկեղեցի»՝ Դիադինից հիւսիս արևմուտք, որի անունը կապւած է ճամփորդներին ապաստան տուող աստծոյ (Վանատուր) հետ՝ իրանական Բագա կամ Միթրա աստուածութիւնը, որի տօնը՝ Μιθράκανα, Միհրագանը, նշւում էր Միհր (հոկտեմբեր) ամսին և հնում Նոր տարին (Նաւասարդ) էր, իսկ հետագայում տարւայ սկիզբը գարնանային գիշերահաւասարին տեղափոխելուց յետոյ դարձաւ այդ ժամանակւայ Նոր տարին: Ք.ծ.ա. 400 թ. Միհրի 1-ը համընկնում էր սեպտեմբերի 23-ին (յուլ.), Ք.ծ.հ. 256 թ. Նաւասարդը սեպտեմբերի 23-ին էր, 325 թ.՝ սեպտեմբերի 6-ին: Քրիստոնէութեան ընդունումից յետոյ այդ տօնը, որ միաժամանակ նաև բերքի տօն էր, փոխարինւում է սուրբ Յովհաննէս Մկրտչի (հնում համանարար Աքանագինես մարտիրոսի) յիշատակի օր:

Որ Բագաւանը շատ կարևոր կայարան էր յունական սահմանից Վաղարշապատ ինչպէս նաև Արտաշատ գնացող ճանապարհին, պարզ երևում է Ագաթանգեղոսի երկում (պարբ. 817-819)[108], իսկ որ այն շատ կարևոր ռազմավարական նշանակութիւն ունեցող վայր էր, երևում է այն երկու յիշատակութիւնից, որ վերաբերում են Վաղէս կայսեր գործողութիւններին՝ ուղղւած պարսիկներին սպառնալիքների տակ պահելուն՝ առանց խաղաղութեան բացայայտ խախտման (Փաւստ., V, Դ, էջ 196 և V , ԽԴ, էջ 259, ինչպէս նաև Ammian. 29, 1, 3): Այստեղ Vagabanta-ն Բագրևանդ գաւառանւան և Բագաւան տեղանւան

խառնուրդն է: Փաւստոսը (V. Ա. էջ 191. 35) գրում է. «Եւ զօրսն Յունաց յԵռանդ[109] և ի Բախիշն[110] ընդ ամենայն երկիրն Հայոց բաշխէին[111] ընդ ամենայն գաւառսն»: V, Դ. էջ 196. 18 և յաջորդներ. «Եւ եկեալ զօրքն Պարսից ապատակ առնէին և ի միջաշխարհն Հայոց. ապա և թագաւորն Հայոց Պապ զօրաժողով առնել հրամայէր ի Բագաւանն: Եւ զօրքն Յունաց, որ էին յԵռանդին ի Բախիշանն[112] ի մի վայր ժողովեցան առ թագաւորն Պապ, և ածին փոս (φόσσα) զբանակաւն իւրեանց մօտ ի լեառնն ի Նպատ մեր ի գետն Եփրատ, եւ կազմեալ պատրաստեալ կային գործոյ ճակատուն»: Ինչպէս նաև V, ԽԴ․ , էջ 259 ասում է, որ Մերուժանը գալիս խանում է Կոգ գաւառը (Դարոյնք բերդով), դիրք գրաւելով լրտեսներ է ուղարկում Մանուէլ Մամիկոնեանի բանակը: Վերջինս գտնւում էր Բագրևանդ գաւառի Բագաւան աւանում, որի մօտակայքում էին գտնւում Ձարեհաւանդ (1. Ձարեհաւան) քաղաքի աւերակները: Կոգից (Բայազէդի մօտ) Բագաւան տանող ճանապարհն անցնում էր լեռներով, որոնք կոչւում էին Եղջերք (Եղջիւրներ):

*

* *

Այսպիսով, Ragauna, Ragaunia գրութեան ձեւերը Ռաւեննացու մօտ աւելի ճիշտ են, քան Raugonia-ն, որ կարելի է վերականգնել Ragauna կամ *Bagauana, ինչպէս նաեւ Vastauna, Rav. Bastauena, 63, 17[113]:

Andaga տեղանունը յայտնի է բիւզանդական եպիսկոպոսութիւնների ցուցակից: Մի ընազրում, որը Հ. Գելցերը վերագրում է Յովհաննէս Չմըշկիկ կայսեր ժամանակներին, Տրապիզոն /Խալդիա/ մայրաքաղաքի պաշտօնեաների ցանկում բւարկւած են[114].

| | | | |
|---|---|---|---|
| η̅ | ὁ Μανανάλεως | ιε̅ | ὁ τὸ Χαντίερζ |
| θ̅ | ὁ Ζαρινάκων | ιϛ̅ | ὁ τὸ Ὀλνοίτην |
| ι̅ | ὁ Αὐδάκου | ιζ̅ | ὁ Φασιανῆς |
| ια̅ | ὁ Μεσουνῆ | ιη̅ | ὁ τὸ Σερμάντζου |
| ιβ̅ | ὁ Χαχαίου | | |
| ιγ̅ | ὁ Σακάμου | | |
| ιδ̅ | ὁ Χαβτζίτζιν | | |

Փորր-ինչ աւելի ուշ շրջանում ընդօրինակւած ընազրում ցուցակն ունի հետեւեալ տեսքը.

η̄ ὁ Σακάβου
θ̄ ὁ τοῦ Χαβτζίζου
ῑ ὁ τοῦ Χαντίερζ
ῑᾱ ὁ τοῦ Ὀλνούτη
ῑβ̄ ὁ τοῦ Φασιανῆς
ῑγ̄ ὁ τοῦ Σερμάτζου
ῑδ̄ ὁ Ἀνδάκων
ῑε̄ ὁ Ζαρινάκων

Այդ տեղանուններից ծանօթ են Մանանաղին[116], Φασιανή=Բասէնը, Ὀλνούτης=Օղնուտը՝ Գիւնէք գետի վրայ[117] Σερμάτζου=եւ Սրմանց լեռան, Անանիա Շիր., Աշխարհ., 31, 6 τὸ κάστρον τοῦ Τζερματζοῦ Konstantin Porphyrog. de administr. imp. c. 44 p. 194, 8, այսինքն՝ Բինգեօլդաղ[118] τὸ Χαβτζίτζιν =հայ. Հաւաճիչ, Հաւճիչ, Արիս. Լաստ., 4, 82, Ստեփ. Ա.ս., III, ԽԳ, էջ 276, هفجيج Hafčič, G. Freytag, Geschichte der Hamdaniden, ZDMG X, I, 467: Ըստ Արիստակէսի՝ Հաւաճիչը գտնւում էր Աղորի գաւառի կողմերում: Երբ Լիպարիտի որդի Իւանէն, որին որպէս պարգեւ բնակութեան տեղ էին տւել Հաշտեանք գաւառի Երեզ մեծ աւանը եւ շրջակայ դաստակերտները, իմացաւ Հռոմէական կայսրութիւնում քաղաքացիական պատերազմի մասին (հյց. 506 թ.=1057/8 ինդ. X), խաբէութեամբ առնելով Եղանց բերդ (Օղնուտ) ամրոցը, կրկին վերադարձաւ Աղօրի գաւառն ու Հաւաճիչ ամրոցը: «Հիջրի 328թ. (18 հոկտ. 939-5 հոկտ. 940) Մծբնացի Սայֆ ադ-Դաուլան յոյների դէմ պատերազմի ժամանակ գրոհում է تاليقا (այսինքն՝ قاليقلا Qālīqalā=Էրզրում) քաղաքի վրայ: Յոյները վերջնիս դէմ դիմաց մի քաղաք էին կառուցել, որին տւել էին Hafčič անունը: Նրանք, տեղեկանալով գրոհի մասին, այրում են քաղաքն ու դիմում փախուստի: Այդ մասին երգել է բանաստեղծ ան Նամին: Այնուհետեւ ադ-Դաուլան վերադառնում է եւ մինչեւ ձեան հալչելը մնում է Արզնում (Արզան, սիր. Արզոն)՝ Հայաստանի սահմանի մօտ: Այստեղ նրան այցի է գալիս Հայաստանի եւ ազ Ջաւազանի (Անձաւացիք)[119] այսինքն՝ Վասպուրականի Գագիկ թագաւորը, ապա նա գնում է Խլաթ՝ կենտրոնական Հայաստանի մայրաքաղաք» եւ այլն: Ըստ Ստեփանոս Ասողիկի՝ Վասիլ Երկրորդ կայսրը (Ք.ծ.հ. 1000 թ.), երբ անցնում էր Յանձիթի, Բալուի, Կոհեր լեռան (գտնւում է Հաշտեանքի, Ծոփքի եւ Խորձեանի միջեւ), Արշամունիք գաւառի Երեզ քաղաքի մօտերքով, հասնում է Հաւճիչ լեռն ու քաղաքը, ուր նրան մեծարանքով ընդունում են Աբխազիայի Բագարատ թագաւորն ու նրա հայրը՝ Վրաստանի Գուրգէն թագաւորը: Այստեղից նա գնում է Հարք գաւառի Մանազկերտ քաղաքը: Պէտք է ենթադրել, որ Հաւաճիչը պէտք է գտնւած Գիւնէքի

ակունքների մօտ, Օղնուտից հիւսիս, հիւսիս-արեւելք: Μεσουνῆ-ն կարող է Վաժնունիքը լինել, հին հայ. Վարաժնունիք, գաւառ Տուրուբերանում, որը բաւականում է Հարքի կողքին եւ տարածւում էր մինչեւ Արածանի, Անան. Շիր., 30, 13-14, Hübschmann, Die altarmenischen Ortsnamen, էջ 322[120]: Այդ դէպքում յանձին Χαχαίου-ի, որ դատելով բարկման հերքականութիւնից, ըժար քէ կապ ունենայ Եկեղեաց գաւառի Խախ աւանի հետ, ուր Պապ թագաւորի ապարանքն էր (Փաւստ., V, ԻԴ, էջ 222, 6-7, 223, 33), կարելի էր տեսնել Հարք (սեռ. Հարքայ) գաւառը, որ τὸ Χάρκα աստւել ճիշտ ձեւով վկայում է Կոստանդինին Ծիրանածինը (de administr. imp. c. 44 p. 193, 7. 195, 12): Σακάμου եւ Σακάβου անուններդ պէտք է ենթադրել Սուկաւ-ը՝ լեռ Բագրեւանդ գաւառում, Ստեփ. Ասող., III, ԽԱ, էջ 371=206, 6, Յովհ. Մամիկ., էջ 9=թարգմ. Langlois, I, 362 a, նաեւ՝ Ջրբաշխ (Սոփերք հայկականք, 19, 33, 63, 65), այժմ՝ Քյոսա դաղ Վաղարշակերտի (Ալաշկերտ) մօտ, Hübschmann, Die altarmenischen Ortsnamen, էջ 465: Καντίερζ-ը=**հանդերձ**, միջ. հայ. *Հանրերձ, ծանօթ չէ ինձ: ὁ 'Ανδάκων-ը (այս ձեւն ամէն դէպքում աւելի ճիշտ է, քան ὁ Αὐδάκου cod. Athen. 1372) սովորաբար զուգակցւում է ὁ Ζαρινάκων-ին: Վերջինս, անշուշտ, **Զարինակ** յայտնի ամրոցն է Հայկական թագաւորութիւնում, որը 543 թ. (1094/5) պաշարում եւ գրաւում է Անտիոքի տէր Աղուսիանը՝ Դդուշ (Տուտուշ) սուլթանի զօրապետը, Մատթ. Ուռհ., էջ 248, 14-16=208:

Տարօնում գտնւող «ի հարաւոյ կուսէ վանացն, որ ի գլուխ Նարդակայ (տրր. 1 Սաղակայ), եւ հայի ի փոքր ամրոցն Մեծամոր ներքոյ Նարդակայ՝ զոր Անդակն կոչեն» (Յովհ. Մամ., էջ 11, 25=28=I 363 a Langlois, 35, 18=371b. 41, 12-14=374 a: Հմմտ. Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 191, Հիւբշման, նոյն տեղում, 452) ոչ մի կապ չունի բիւզանդական եպիսկոպոսութիւնների հետ:

Այնինչ Andaga կայարանի տեղադրութիւնը կարելի է որոշել Aramanas-ի օգնութեամբ: Ղազար Փարպեցին գրում է, քէ ինչպէս Վարդան-նանց ապստամբութեան սկզբնական շրջանում դիմադրութեան կողմն անցած հայերը «միաբանութեամբ արհամարհեալ զամենայն սնոտի մեծութիւն կենցաղոյս այսորիկ՝ առ ոչինչ համարեցան այլ հանդերձ հասանելովք ընդ ինքեանս դրամբ եւ ընտանեօք դէմ եղեալ անցանել ի կողմանս իշխանութեանն Յունաց ճեպէին, որ եւ քաղուցանել միաբանութեամբ եւ կամ ատտ անդր ցրուել զանձինս կարասցեն: Եւ եկեալ հասանէին զիւղ մի, որոյ անուն էր Արամանայ, ի նահանգին Բագրաւանդայ, մերձակայ սահմանակից Բաւէնոյ եւ Տւարծատափու. ուր եւ սակաւ ինչ աւուրս կամեցեալ հանգչել, եւ զուշ եղեալ, ճանապարհն զնալ պատրաստէին տախտով»[121]:

Այստեղից Վարդանը իր հիրայինների հետ շարժւում է դէպի Ծաղկոտն գաւառը, դէպի այն ամրոցը, որ կոչւում էր Անգղ (գլ. 31, էջ 60, 19-23=291a): Ուրեմն Արամանայ գիւղը գտնւում էր Բագրեւանդ գաւառի արեւմտեան ծայրում, Բասէն եւ Տւարածատափ գաւառների սահմանին, միաժամանակ նաեւ Պարսկաստանի եւ Հռոմի, որին պատկանում էր Բասէնը, իշխանութիւնների ոլորտի այն ժամանակւայ սահմանին: Արամանայը գտնւում էր հէնց այն ճանապարհին, որը Բագրեւանդից գնում էր հռոմէական մաս, այսինքն՝ դէպի Թէոդոսուպոլիս (Կարնոյ քաղաք, Էրզերում) եւ նշւած է Պեւտինգերեան քարտէզում: Բաւական է մի հայեացք ձգել Հիւբշմանի քարտէզին (Die altarmenischen Ortsnamen), համոզւելու համար, որ Արամանայ գիւղը լիովին համապատասխնում է Armanas կայարանին: Այդ դէպքում Andaga կայարանը կարելի է տեղադրել Դելի-բաբա լեռնանցքի ելքից հիւսիս: Ըստ այդմ Chadas կայարանը եւս գտնւել է Բագրեւանդում: Այն հաւանաբար նշում է Խաղի /սեռ. Խաղայ/ եկեղեցու վայրը (Փաւստ., IV, ԺԲ, էջ 111), որն էլ Ուղեցոյցի ստեղծման կարեւոր terminus post quem-ն է: Ամենայն հաւանականութեամբ վերջինս, ինչպէս նաեւ Արիների երկրից նահանջի (այսպէս կոչւած Ալեքսանդրի) ուղեցոյցը եւ, ցաւօք, կորած Արիական Պարթեւստանից երբի նկարագրութիւնը Կոստանդինոս կայսեր նախապատրաստութիւններն էին պարսիկների դէմ ծրագրւած պատերազմի: Բագաւանի եկեղեցին Խաղը չդարձրեց եպիսկոպոսական Մայր տաճար, քանի որ նրա եկեղեցական ծխերը Բագրեւանդ եւ Արշարունիք գաւառներում էին, իսկ Բագաւանի եկեղեցին ծայրամասում էր, այլ կառուցեց մի նոր եկեղեցի, որը գտնւում էր երկուսի սահմանի մէջտեղում:

*

* *

Նախքան մէջ բերւած տեքստերից անհրաժեշտ յետեւութիւններ անելը, բերեմ մի քանի հատւած եւս: Յուսիկ կաթողիկոսը՝ դաժան ծեծի են - թարկւելուց յետոյ «զոր բարձեալ պաշտօնէիցն դրան եկեղեցւոյն ի Բնաբեղ բերդէն արքունի՝ մեծ Ծոփաց գաւառին, եկին բերին ի գաւառն Դարանաղեաց ի գեւղն Թորդան. եւ անդ ոչ ինչ յետ բազում աւուրց հան - գեաւ, եւ եդաւ մօտ առ Գրիգորի եւ ընդ հարս իւր»[122]: Դանիէլ քորեպիսկոպոսի սպանութիւնից յետոյ նրա սիրելի աշակերտներ Շաղիտան ու Եպիփանը եւ նրանց հետ նաեւ բանակի հոգեւոր պաշտօնեաները /**պաշտանէից եկեղեցւոյ բանակի**/ վերցրին նրա սուրբ դին, եւ տարան թա - ղեցին Տարօնում, Աշտիշատի Հացեյաց դրախտ վայրում[123]: Նոյն կերպ Փառէն կաթողիկոսի մահից յետոյ «առեալ պաշտօնէիցն եկեղեցւոյ բա -

նակին զմարմինն, գնացեալք ի գաւառն Տարօնոյ տարան ի յագարակն[124] մեծի մարգարէանոցին Յովհաննու, որ էր ինքն ի կենդանութեանն իւրում յառաջագոյն բնակեալ. եւ զօրա ոսկորս ծածկեցին»[125]:
Ներսէս կաթողիկոսի մահից յետոյ «առեալ զմարմին սրբոյ Ներսէսի զառնն Աստուծոյ պաշտօնեայք (պաշտաւնեայք) եկեղեցւոյն, եւ Փաւստոս եպիսկոպոս, եւ պաշտօնէիցն (պաշտաւնեիցն) գլխաւոր Տրդատ, եւ Մուշեղ սպարապետն եւ Հայր Մարդպետ, եւ ամենայն ազատագունդ բանակն արքունի, բարձին յաւանէն ի Խախ գեղջէ՝ ուր գործն կատարեցաւ, տարան ի Թիլն յաւանն յիւր գեւղն: Թագաւորն Պապ երթեալ պատեաց եւ թաղեաց ի մարտիրոսականն ի բնակութիւն»[126]: Վախճանւած Սահակ կաթողիկոսին եւս «առեալ վաղւաղակի ամենայն հանդերձելովք, ձեռնասուն աշակերտք պաշտօնէիցն իւրոց, որոյ գլխաւորին (աւագ սարկաւագ) Երեմիա անուն ճանաչէր»... եւ տարան նրան ու հասցրին Տարօն, իր տոհմական Աշտիշատ գիւղը (Կորիւն, էջ 42, 1 եւ յաջորդները): Փաւստոսն իր երկի վերջում մէկ անգամ եւս յիշատակում է սարկաւագապետ Տրդատին. «Եւ էր Գինդս այս ի Տարօն գաւառէ, եւ լեալ սա աշակերտ մեծին Դանիէլի. եւ յետ նորա էր գլուխ աբեղայից, եւ վարդապետ միանձանց, եւ առաջնորդ մենակեցաց... Եւ էր նոցա բուն գլխաւոր սուրբն Գինդ, զի առ հասարակ ամենայն մարդիկ երկրին Հայոց անուանեալ կոչէին սմա վարդապետ: Բայց էին եւ ի նոցունց այլք աշակերտք, որք նմանէին իւրեանց վարդապետին եւ նորա ձեռինն, որոց անուանք այս են. Վաչակ, Արտոյտ, Մարախ. եւ Տրդատ լեալ էր սոցա ընկեր: Իսկ առ մեծին քահանայապետին Ներսէսի էր լեալ սարկաւագա պետ, եւ յետ մահուն Ներսէս ի նոյն յառաջին վարդապետսն յանապատաւորաց դասս թեւակոխեաց... Եւ սրբոյն Տրդատայ կայեանք բնակութեան էր ի գաւառն Տարօնոյ, շինեալ զիւր[127] եղբայրանոցս»[128]:
Յատկապէս կարեւոր է հետեւեալ վկայութիւնը.
«Յաղագս Փաւստեայ եւ Զորքայ եպիսկոպոսաց
Էր առ այնմ ժամանակաւ Փաւստոս եպիսկոպոս. սա ի ժամանակ Ներսէսի եպիսկոպոսապետին՝ էր ի տան նորին իբրեւ թելակալ: Սոյն պէս Զորք այր ներքինի ընդ նոսին. քանզի էին ի ներքնի հայրապետին /ի տան/[129] իւրում ընդ նորա ձեռամբ երկոտասան եպիսկոպոսք, աթոռակիցք իւր գործակիցք եւ խորհրդակիցք: Թող զայլոց գաւառաց ամենայն եպիսկոպոսութեանն, որ ընդ նովաւ[130]. այլ երկոքեան սոքա յայնց երկոտասանիցն: Եւ էին սոքա ի տեսչութիւն աղքատանոցացն հաւատացեալք, եւ յամենայն էին հաւատարիմք նորա ի ժամանակս նորա, եւ յամս Խոսրովու (Երրորդ) եւ Արշակայ (Երրորդ) երկուց թագաւորացն բաժանւա րացն, մինչեւ դեռ եւս կային նոքա կենդանիք»[131]:
«Յաղագս Առոստոմայ եղբօր Փաւստեայ եպիսկոպոսին

Եւ էր եղբայր մի Փաւստեայ եպիսկոպոսի, կրօնազգեաց մենակեաց անապատակեաց լեռնական սքանչելի: Եւ էին լեալ սորա ազգաւ Հոռոմ. այլ այրս այս մեծաւ վարեօք շրջէր զամենայն աւուրս կենաց իւրոց: Եւ էր սա բնակեալ յԱյրարատեան գաւառին, եւ վարէր նա Հոգւով սրբով. շրջէր սա յանապատս մաշկահանդերձ ճարակաւոր ի լերինն մինչեւ յօր հանգստեան իւրոյ: Այս հանգաւ սա. եւ բերին յանապատէն զմարմին սորա, թաղեցին ի բուն ի գեւղն հայրապետին Ներսէսի, որում անուն Աշօքն կոչի. եւ ամի ամի զյիշատակն նորա կատարէին»[132]:

Ներսէս կաթողիկոսի մասին կա մէկ այլ վկայութիւն եւս. «Եւ յօրէնսն սաստէր մեծապէս. եւ զոր օրինէր. եւ զոր անիծանէր, անիծեալ լինէին: Եւ բազմացոյց զկարգս պաշտօնէից /պաշտաւնէից/ յամենայն տեղիս իշխանութեանն ի սահմանացն[133] Հայոց, եւ յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոսս[134]. եւ հանապազ զգուշանայր տեսչութեանն իւրոյ եւ իշխանութեան, որչափ եկաց նա ժամանակս»[135]:

Ներսէսն ինքը, հակառակ իր կամքի, դարձաւ կաթողիկոս: Արշակ թագաւորը հրամանն տւեց, եւ բերին կրօնաւորի (κληρικός) զգեստներ հագցրին նրան. «ետ հրաման, եւ կոչեցին զծերունին եպիսկոպոսն` որում անուն էր Փաւստոս, եւ տայր զնա ձեռնադրել ի սարկաւագութիւն»[136]:

Այստեղից երեւում է, որ Ներսէս հայրապետի կաթողիկոսարանում կար 12 պաշտօնեայ, որոնք վարում էին տեսչութիւնը, եւ որոնց վստահւած էր յատկապէս աղքատների խնամքը: Հաւանաբար նրանց մէջ էր նաեւ Խադը, որին անձամբ դաստիարակել էր Ներսէս եպիսկոպոսապետը[137] եւ յանձնարարել աղքատների հոգաբարձութեան գործը: Երբ Ներսէսը որպէս դեսպան ուղեւորւելու էր Կոստանդնուպոլիս /հաւանաբար Ք.ծ.հ. 357 թ./, Խադին ձեռնադրում է Բագրեւանդի եւ Արշարունիքի եպիսկոպոս եւ թողնում իրեն փոխանորդ: Այդ մեծ տարածքը հարաւից եւ արեւմուտքից անմիջականօրէն միացած էր Այրարատին` պետութեան կենտրոնական նահանգին: Որպէս եպիսկոպոս Խադն ստանձնում է նաեւ աղքատներին սնելու կարեւոր գործը: Այս տեսանկիւնից նրա պաշտօնը լիովին համապատասխանում էր Լաւրենտիոս սարկաւագի պաշտօնին: Ներսէսի վերադարձից յետոյ Խադը եւ եպիսկոպոսական աւագ սարկաւագ /**արքիդիակոնն եպիսկոպոսն**/ Մուրիկը որպէս կաթողիկոսի տեղապահներ մասնակցում են Բագաւանում նշւող տարեկան մեծ տօնակատարութեանը: Ըստ երեւոյթին Մուրիկը որպէս աւագ սարկաւագ Խադի յետնորդն էր, երբ վերջինս թեմ ստացաւ: Ներսէսի մահւան ժամանակ աւագ սարկաւագը Տրդատը կամ Տրդածն էր: Կաթողիկոսի 12 խորհրդականները, որոնց թւում կար նաեւ մի ներքինի, իրականում սարկաւագներ էին, վարչութեան պաշտօնեաներ եւ կրում էին ἐπίσκοπος տիտղոսը` իր նախնական «hսկիչ», հայ. **տեսուչ, վերակացու**

իմաստով[138]: Պարզ չէ սակայն, թէ այդ սարկաւագապետերի հետ ինչ առնչութիւն է ունեցել Փաւստոս եպիսկոպոսը: Ըստ երեւոյթին հեղինակը ցանկացել է ընթերցողների մէջ այն տպաւորութիւնն ստեղծել, որ Ներսէսի բարձրացման ժամանակ (350-ի եւ 357-ի միջեւ) եպիսկոպոս եւ արդէն ծերունի Փաւստոսը եղել է Ներսէս կաթողիկոսի եռուն եւ իրադարձութիւններով լի ամբողջ ժամանակաշրջանի ականատեսը՝ ապրելով նաեւ մինչեւ Հայաստանի երկրորդ բաժանումը (Ք. ծ. հ. 389 թ.): Եւ քանի որ նա Ներսէսի պաշտօնավարման սկզբում արդէն ծեր էր, ուրեմն նախորդ շրջանում եւս, Խոսրով երրորդի եւ Տիրանի օրօք, եղել էր ականատես, հետեւապէս եւ այդ ամբողջ ժամանակահատուածի՝ Լուսաւորչի եւ Տրդատի մահից մինչեւ Հայաստանի բաժանումը, բանախօսը: Սա վարքագրութեան անհրաժեշտ պայման էր, որ կիրառւում էր այն բանից յետոյ, երբ Կորիւնը առաջինը որպէս ականատես եւ ժամանակակից իր կեանքի ընթացքի երկրորդ կէսին նկարագրեց երանելի Մաշտոցի վարքը[139]: Այս հնարանքն արդէն իսկ կասկածի տակ է դնում հեղինակի այն տեղեկութիւնը, թէ Փաւստոսը Ներսէսի բարձրացման ժամանակ եպիսկոպոս էր, եւ այն էլ օծող եպիսկոպոս, այն դէպքում, երբ նա մրցակցութեան մէջ չէր կարող մտնել աւագ սարկաւագ Խադի հետ: Ամենայն հաւանականութեամբ Փաւստոս եպիսկոպոսն այն նոյն Փաւստոսն է, որին Պապ թագաւորը 373 թ. Ներսէսի մահից յետոյ ցանկանում էր Կեսարիայի մետրոպոլիտ Բարսիլիոսի ձեռքով եպիսկոպոս օծել տալ: Մէկ այլ թեւ, սակայն, ընտրում է ոմն Կրիլիոսի, եւ քանի որ Փաւստոսը չէր կարողացել ներկայացնել Սատաղի Պոյմենիոս եւ Փոքր Հայքի Նիկոպոլսի Թէոդոսիոս եպիսկոպոսների յանձնարարականները, ուստի մերժւում է Բարսիլիոսի կողմից: Այնուհետեւ նա դիմում է Կապադովկիա 2-ի Անթիմոս մետրոպոլիտին, որը նրան առանց այլեւայլութեան օծում է[140]: Ըստ այդմ ուրեմն Փաւստոսը իրականում եպիսկոպոս է դարձել միայն 373 թ.:

*

* *

Ինչպէս պարզեցինք, Ներսէսի կաթողիկոսարանի տասներկու «եպիսկոպոսների» դիմաց, սկզբնապէս եղել է Լուսաւորչի օծած ընդամէնը եօթ «եպիսկոպոս»: Նրանք եւս իրականում սարկաւագներ էին, եւ միայն Լուսաւորչի յետնորդ Վրթանէսի օրօք նրանցից երկուսը՝ աւագ սարկաւագներ Աղբիանոսն ու Եւտաղիոսը, օծւեցին իբրեւ թեմակալ եպիսկոպոս: Հաւանաբար նաեւ չորրորդը՝ Մովսէսը, փոխառուած է Բասէնի Մովսէս եպիսկոպոսից (Փաւստ., VI, ԻԴ), ուստի նախնական ցուցակն այս է.

1. Աղբիանոս (Ἀλβῖνος), Վրթանէսի օրօք, Մանաւազակերտի եպիս -

կոպոս.

2. Եւտաղիոս (Εὐθάλιος), Վրթանէսի օրօք, Բասէնի եպիսկոպոս

3. Բասոս (Βάσσος)

/Մովսէս, Մովսէս, Բասէնի եպիսկոպոս/

4. Եւսեբիոս (Εὐσέβιος)

5. Յովհաննէս (Ἰωάννης)

6. Ագապէս (Ἀγάπιος)

[Արտիթէս (Ἄρτιος) =Արտիք, Բասէնի եպիսկոպոս]

[Արսուկէս (Ἀρσύκης) Ասրուկ, Բագրեւանդի եւ [Արշարունիքի] եպիսկոպոս]

Անտիոքէս (Ἀντίοχος)

Այս անուններն ամբողջութեամբ յունալատինական են, մասամբ նոյնիսկ մաքուր քրիստոնէական, նաեւ՝ աւետարանական: Ագաթանգեղոսի այն պնդումը, թէ Գրիգորն այդ «եպիսկոպոսներին» օծել է դարձի եկած տեղացի հեթանոս քրմերի որդիներից, խիստ անհաւանական է: Աւելի շուտ կարելի է ենթադրել, որ «եպիսկոպոսները» պատկանում էին այն «բազմութիւն եղբարց զորս հաւանեցուցանէր ընդ իւր գալ, զի փինակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին»[141]: Գրիգորն այստեղից հետը բերեց կրօնը, Փիղախթոս գիւղից Աբանազինէս նահատակի մասունքները, եթէ, իհարկէ, այն ժամանակ այդպիսիք կային, իսկ իր Γρηγόριος անունը, որ կրում էր ի պատիւ Սքանչելագործի, ցոյց է տալիս, որ Գրիգորը հասակ է առել ոչ թէ Կեսարիայում, այլ Պոնտոսի Նեոկեսարիա քաղաքում:

Այստեղից երեւում է, որ հենց՝ Հայ եկեղեցու սկզբնաւորման շրջանում, առաքեալների պատմութեան (6, 1-6) նմանութեամբ նշանակւում է եօթ սարկաւագ (վերակացու=ἐπίσκοποι)՝ աղքատների գործն ու կառավարչութիւնը վարելու: Աւելի ուշ, երբ կանոնական տեսանկիւնով օծեցին եպիսկոպոս, նրանց թիւը հասաւ տասի, իսկ վերջում՝ տասներկուսի: Ներսէսի օրօք, երբ աճել էր եպիսկոպոսի կարեւորութիւնը, յիշեցին առաքեալներին, եւ նրանց թիւը դարձաւ տասներկու (Փաւստ., VI, Ե): Սա մի երեւոյթ է, որ մշտապէս կրկնւում է հերձուածների աշխուժացման ընթացքում: Տասներկու թիւն այնուհետ պահպանւեց նաեւ Հայաստանում մի շարք եպիսկոպոսութիւնների ստեղծման ժամանակ, եւ յաղթանակեց պետական եկեղեցուն բնորոշ՝ «եպիսկոպոս» կանոնական հասկացութիւնը: Փաստօրէն 11-րդ դարում եւս կաթողիկոսարանում գործում էր տասներկու եպիսկոպոս, հռոմէական եկեղեցու կարդինալին հաւասարազօր, եւ այդ աւանդոյթն Էջմիածնում պահպանւեց մինչեւ 18-րդ դար: Այսօր Էջմիածնի կաթողիկոսական սինոդում կայ հինգ եպիսկոպոս[142]:

## 3. ԴԱՆԻԷԼ ՏԱՐՕՆԵՑԻ

Մայր եկեղեցու այս «եպիսկոպոսների» կամ աւելի շուտ սարկաւագների բուռմ, որոնց միայն անունններն են հասել Գրիգորի ժամանակներից, խիստ առանձնանում է մի անձնաւորութիւն. դա մեծ քորեպիսկոպոս (Missionsbischof)[143] Դանիէլ Տարօնեցին է: Նրա մասին Փաւստոսը գրում է III, ԺԴ էջ 36 եւ յաջորդներ[144].

«Յաղագս վարուց եւ գործոց[145] մեծին Դանիէլի քահանայի[146], առն Աստուծոյ, եւ թէ որպէս յանդիմանեաց զթագաւորն Տիրան, եւ կամ որպէս պատուհասեալ մեռաւ ի նմանէ:

Բայց յայնժամ (Տիրան թագաւորի օրօք) դեռեւս կենդանի էր ծերունին[147] սուրբն մեծն քորեպիսկոպոսն (χωρεπίσκοπος) Դանիէլ. այր սքանչելի: Աշակերտ եղեալ էր սա մեծին Գրիգորի.

| Ա | Բ | Գ |
|---|---|---|
| վերակացու[148] եւ գըլխաւոր եկեղեցեացն[149] [իր] իշխանութեանն, /այլ/ վերակացու[148] եւ հրամանատար տեսուչ[150] եւ հոգաբարձու (=ἐπιμελητής) ամենայն եկեղեցեացն հայոց մեծաց ընդ ամենայն տեղիս. այլ եւ ի կող - մանս Պարսից յօտար տեղիս քարոզեաց սա, եւ անբիւ ի մոլորութենէ դարձոյց: Եւ էր սա այր զար - մանալի, առնէր նշանս եւ զօրութիւնս մեծա - մեծս յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սա եւ կօշկօք քայելոյն[157] զնայր ի վերայ ջուրց զետոց, եւ ոչ քանային[160] եւ ոչ հանէր սա: Եւ յաւուրս | վերակացու նահանգին Տարօնոյ, Գրիգորի ձե - ռական [նահանգի]՝ իշ- խանութեանն կողման գործակալութեանն մե- ծի դատաւորութեանն, ունէր զիշխանութիւնն [Տարօնում] զայն ա- ռանձինն[151]: Եւ սա էր ազգաւ ասորի եւ ունէր սա զաստիճան արքո- ռոյն գլխաւորութեան Տարօնոյ, ի մեծն եւ նախ զառաջին եկեղե - ցին ի մայր եկեղեցեացն ամենայն Հայաստա- նեայց-այսինքն նախ եւ զառաջին եւ /գլխաւոր/ տեղին պատուական[153]. զի առաջ նախ անդ շի - նեալ էր զուրբ եկեղե- ցին, եւ ուղղեալ սեղան յանուն Տեառն[158]: Նոյն- պէս եւ ի ներքոյ քան | հաւատարիմ էր սա այնմ գլխաւոր տեղ- ւոյն, իշխանութեան աթոռոյն հայրապե- տացն, հաստատու- թեան ուխտին կաթո- ղիկէ եկեղեցւոյն (καθολική): Եւ էր սորա ընկալեալ զքորեպիս- կ ո պ ո ս ո ւ թ ե ա ն (χωρεπισκοπή) ձեռ- նադրութիւն աստի- ճանին ի ձեռաց մե- ծին Գրիգորի. յա- ւուրս յորում կործա- նեաց զբագինս մեհե- նիցն[152] Հերակլայ՝ այս ինքն Վահագնի (Ինդրա), որում տեղ- ւոյ[154] Աշտիշատն կարդացեալ[155]. որ[156] [Գրիգոր] նախ եդ զհիմունս եկեղեցւոյ սրբոյ[159]: |

ձմերանոյն՝ յորժամ կուտեալ դիզեալ զմեծութիւն[162] բազմութիւն թանձրութեան ձեանցն կուտակեալ հիւսեալ ձեանցն ի վերայ ձմեռային լերանցն՝ յայնպիսի լեռանց ի վերայ ընդ այնպիսի ժամանակի կամէր ուրեք երթալ ի պէտս ճանապարհի, յանկարծօրէն[164] ձիւնն ցամաք[166] արջն լինէր առաջին նորա: Եւ զի կամէր ի հեռաստան ուրեք երթալ, իբրեւ զփայլակն սլացեալ լինէր անաշխատ. իբրեւ թռուցեալ յոր կամէրն երթալ ի տեղին յանկարծօրէն անդ գտանէր: Յարուցանէր զմեռեալս[169], առնէր եւ բժշկութիւնս հիւանդաց, եւ այլ եւս մեծ նշանս եւ զօրութիւնս բան զնոյնս գործէր զորս ոչ բաւեսցէ ընդ գրով նշմարանաց[170] փակել: Եւ բնակութիւն իւրոց կայենիցն յանմարդի լերինս, այլ զտեսչութիւն մարդկան պիտոյից ոչ երբեք անփոյթ առնէր: Միահանդերձ մաշկանափորտն սանդալաւոր (σάνδαλον) եւ կերակուր իւր արմատք բանջարոց, եւ զատազան անզամ ընդ ինքեան ոչ ունէր: Եւ առ բանն Աստուծոյ անչափ էր հզօր, զի զինչ հայցերն յԱստուծոյ՝ առնոյր, եւ զոր ինչ ասէր՝ այն լինէր:

Արդ միաժողով եղեալ մեծամեծք նախարարացն, եւ ի մի վայր եկեալք, խորհուրդք խորհեցան. հաւանեցուցին զթագաւորն, ածել զծերունին զԴանիէլ յիւրեանց բանակն, զի ածցեն կացուսցեն զնա իւրեանց գլուխ առաջնորդ, զի նստի նա յաթոռն հայրապետական:

զնա մարգարէանոցն Յովհաննու, նոյնպէս մօտ ի տուն Տեառն Հանգիստ առաքելոցն[161]: Արդ այս տեղիք վասն յառաջակարգութեան, կանոնաւ (κανών) ի հայրապետացն եւ ի թագաւորացն պատուեալք լինէին. որպէս ի Դարանաղեաց գաւառին յեկեղեցին Թորդանու պատւին[163] վասն զերեզմանացն[165] հայրապետին Դրիգորի:Նոյնպէս եւ զՅիշատակս թագաւորին Տրդատայ թէ կամօք թէ ակամայ[167] որ արժանին լեալ էր նախածանօք ի Քրիստոսն հաւատոց: Վասն այսորիկ կամ եղեւ [մեր] աշխարհին[168] զնախնեաց ժամանակին հարանց եպիսկոպոսաց զայս տեղիս պատուել ուր սոքա եղեալն էին. զի սիրելի էր աշխարհին, պատուել զյառաջընծային Քրիստոսի զթագաւորն իւրեանց Տրդատ: Նոյնպէս եւ զյառաջեպիսկոպոսն զնախաւաստակն զԴրիգորիս. սոյնպէս եւ ի գաւառն Այրարատեան զնախաւկայսն Քրիստոսի, ուր Դայիանէն եւ Հռիփսիմէն կային, իւրեանց հանդերձ գործակցօքն, սոյնպէս առաւել եւ զնախեկեղեցին: Այս տեղիքս սմա էին յանձն հանդերձ գաւառօքն յորս էին[171]:

Եւ յաճախ յակն աղբերն ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն Հերակլայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում Ցուլն (Տաւրոս) անուանեալ կարդան[172], ի բազնին տեղւոջէ ի բացազոյն իբրեւ բարընգէց մի ի ներքոյ կուսէ, ի դոյզն ծործորալին ի սակաւ անտառակին ի հացուտ պուրակին՝ որում ա-

Եւ յղեցին առ նա[173]... իշխանն Սահառունեաց տոհմին, եւ զԱրտաւան զիշխանն Վանանդայ, եւ զԿարէն իշխանն Ամատունեաց տոհմին, եւ զՎարազ իշխանն Դիմաքսենից տոհմին:

նում տեղոյն իսկ Հացեացն դրախտ կոչեն: Այս այն աղբիւրն է, յորում առնէր յայնմ եւս վաղ մեծն Գրիգոր զմկրտութիւնսն զօրացն բազմաց[174]: Յայնմ տեղւոջ էր սորա կայեանք խցկան սրբոյն Դանիէլի, էր դարափոր արարեալ բնակութիւն. եւ յայնմ տեղւոջ զդիտաւորութիւն այցելութեանն կատարէր:

Եւ եկին նախարարքն հասին գտին զնա յեկեղեաց գաւառին, ի գեւղն եկեղեցւոյն ի Թիլն. զի դեռ իմն զգործ մշակութեան Աստուծոյ գործէր: Եւ առին զնա եւ ածին առ թագաւորն Տիրան, ի գաւառն Աղձնեաց ի Դաւէջ (Բառաէջ) յաւան: Եւ իբրեւ մտանէր առաջի թագաւորին Տիրանայ քորեպիսկոպոսն (χωρεπίσκοπος) մեծն Դանիէլ, անդէն ի ձեռն առնոյր զկշտամբութիւն յանդիմանութեանն»:

Ապա հետեւում է պատմի խիստ քարոզ, յետոյ՝ նզովք, իսկ վերջում Դանիէլը հրաժարւում է առաջարկող պաշտօնից, եւ թագաւորը զայրացած հրամայում է խեղդամահ անել նրան.

«Եւ բարձին զմարմին նորա բազմութիւն մարդկան, որք տեղեակ էին նմա, զիւէին զնա. եւ կամեցան մեծարել զնա ընդ ոսկերս սուրբ վկայիցն Քրիստոսի: Ապա ինքն յայտնեալ երեւեցաւ առն սրբոյ աշակերտին իւրում, որոյ անուն կոչէր Եպիփան, զի մի՛ ի պատիւ առցեն զոսկերս նորա, իբրեւ զայլոցն, այլ տարցին ի տեղին՝ ուր ինքն հրամայեաց, եւ ծածկեսցեն ընդ հողով: Զի այսպէս յայտնեալ բարբառեցաւ նոցա. զի եթէ տէրունական մարմինն, ասէ, ի գերեզմանք ծածկեցաւ աւուրս երկուս մինչեւ զօրն երրորդ՝ յորում յարեաւ առ Հայր իւր, ո՞րչափ եւս առաւել պարտ է մերում հողեղէն մարմինս ընդ հողով ծածկել: Ապա բարձին զմարմին նորա սուրբ սիրելիք իւր աշակերտք, որոյ գլխաւորին անուն էր Շաղիտա, որ ի նմանէ իսկ աշխարհին Կորդուաց վարդապետ սեալ էր. եւ երկրորդին անուն Եպիփան, որ գաւառին Աղձնեաց եւ Մեծաց Ծոփաց ի նմանէ իսկ վարդապետեալ[175] էր. եւ ընդ նոսա պաշտօնեայք բանակին: Եւ զնացին տարան, եդին զմարմին ի տեղւոջն՝ ուր յառաջագոյն էր կայեանք խցկանն իւրոյ յերկրին Տարօնոյ, որ էր մայր եկեղեցեացն Հայոց, մօտ յակն աղբերն՝ ուր առնէր Գրիգոր զմկրտութիւնսն աշխարհազօր բազմութեանն, ի տեղւոջն՝ որ անուանեալ կոչի Հացեաց դրախտ: Յայնմ տեղւոջ ծածկեցին զմարմին սրբոյն Դանիէլի ընդ հողով, ըստ յառաջագոյն տեսլեանն ըստ հրամանի նոցա տուեալ»:

Դժուար չէ նկատել, որ այս աւանդազրոյցը ձեւաւորուել է երեք աղբիւրից: Գ-ում Դանիէլը Տարօնի քորեպիսկոպոսն է, Բ-ում՝ նախ Տարօն գաւառի մայր եկեղեցու վերակացուն, ապա Դարանաղի, Եկեղեաց եւ Այրարատ գաւառների եկեղեցիների տեսուչը: Ա-ում նա կաթողիկոսի իրաւասութեան տակ եղած ողջ տարածքի առաջնորդական տեղապահն է: Տարիներ առաջ գրական նման մի համեմատութիւն յայտնաբերեցի Կորիւնի[176] հայ գրերի ստեղծման պատմութեան եւ Ագաթանգեղոսի երկի սկզբնամասում Արշակունիների տիրապետութեան անկման նկարագրութեան մէջ: Հաւանաբար Դանիէլը եղել է Գրիգորի աջ ձեռքն ու Մաշտոցի նախակարապետը: Այդ մասին Կորիւնը գրում է. «Յետ այնորիկ առնոյր հաւանութիւն երանելին Մաշտոց. որպէս զի Տէր եպիսկոպոսն [Սահակ] ի Կայենականն, եւ նա ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցեն»[177]: Սահակ կաթողիկոսն ու Մաշտոցը իրար մեջ բաժանել էին քարոզութեան մեծ տարածքը, քանի որ այն ժամանակ Հայաստանը դեռեւս կիսով հեթանոսական երկիր էր: Որ Մաշտոցը ոչ միայն քորեպիսկոպոսի պաշտօն, այլեւ կոչում ունէր պարզ երեւում է Փոդ պատրիարքի վկայութիւնից.

ἀνεγνώσθη βιβλιδάριον Θεοδώρου Περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς καὶ τίς ἡ τῆς εὐσεβείας|διαφορά, ἐν λόγοις τρισί. προσφωνεῖ δὲ αὐτοὺς πρὸς Μαστούβιον ἐξ Ἀρμενίας ὁρμώμενον *χωρεπίσκοπον* δὲ τυγχάνοντα

Առաջին գիրքը վերաբերում է զրադաշտականութեանը.

οὗτος ὁ Θεόδωρος ὁ Μοψουεστίας εἶναι δοκεῖ. τήν τε γὰρ Νεστορίου αἵρεσιν καὶ μάλιστα|ἐν τῷ τρίτῳ λόγῳ κρατύνων προσαναφωνεῖ, ἀλλὰ καὶ τὴν τῶν ἁμαρτωλῶν ἀποκατάστασιν τερατεύεται[178].

Դիտնական պատրիարքի ենթադրութիւնը տեղին է: Հայերը Թէոդորոս Մոպսուեստացու († 429 թ.) գրուածքները ներկայացնում են Պրոկղ Կոստանդնուպոլսեցի պատրիարքին՝ կարծիքի: Այդ թղթակցութիւնը պահպանուել է[179]: 553 թ. Կոստանդնուպոլսի 5-րդ տիեզերական ժողովում այդ երկերից որոշ գլուխներ կրկին անգամ ներկայացւում են[180]: Փոդի գլխացանկից տեղեկանում ենք նաեւ, որ Թէոդորոսը եւս բազմիցս դիմել է հայերին՝ փորձելով գրաւել նրանց նեստորականութեան կողմը: χωρεπίσκοπος Μαστούβιος-ը ոչ այլ որ է, քան Մաշտոցը, իսկ Μαστούβιος-ն առաջացել է Μαστούθιος ձեւից: Եօթերորդ դարի վերջին ստեղծուած Διήγησις-ում այդ անունը վկայուած է **Μαστηζτζης**, **Μαστίζτζης** տրր. **Μαστήντζην**, **Μαστήντζη** ձեւերով[181]:



Դանիէլ քորեպիսկոպոսն իրենից յետոյ թողեց չորս աշակերտ. Շաղիտա, Եպիփան, Արտիք և Գինդ, որոնցից նշանաւոր են առաջինն ու վերջինը: Դանիէլը Շաղիտային, որ ծագումով ասորի էր, նշանակել էր Կորդւաց աշխարհի, իսկ Եպիփանին, որ յոյն էր, Աղձնիքի ու Մեծ Ծոփքի ուսուցիչ: Նրանք երկուսով Դանիէլի մարմինը Աղձնիքի Բառաեջ գիւղից տարան Աշտիշատ և յուղարկաւորեցին այնտեղ: Հետագայում, սակայն, մենք նրանց չենք տեսնում իրենց առաքելութեան գաւառներում: Ներսէսի մահուան ժամանակ (Ք.ծ.հ. 373 թ.) Եպիփանը մեծ լեռան վրայ էր, աստուածուհու (մեհեանի) տեղում, «զոր կոչեն աթոռ Նահատայ», իսկ Շաղիտան՝ Առյիւծ լեռան վրայ. այդ երկու լեռը պէտք է փնտրել Փոքր Հայքի սահմանին մօտ[182]: Սա վկայում է այդ երկու ճգնաւորների կապը Սեբաստիայի Եւստաթիոս եպիսկոպոսի հետ, որը կուսակրօնութեան հիմնադիրն էր Փոքր Հայքում, Պոնտոսում և Պափլագոնիայում: Միայն Ներսէսի մահից յետոյ նրանք վերադարձան առաքելութեան իրենց գաւառները: Սուրբ Եպիփանը, որ բնակւում էր Մեծ Ծոփքում, Մամբրէ տեղի անապատում, Մամուշեղ գետի ափին, աւելի ուշ իր 500 աշակերտներով գնաց Յունաց աշխարհ և բնակութիւն հաստատեց մեծ ծովի մօտ, ամայի, օձերով լի մի կղզում, այլուստ բոլորովին անյայտ է: Նա որպէս Մեծ Ծոփքի ու Աղձնիքի քարոզիչ և Տիգրանակերտում (Mipherqet, Martyropolis) վկայարանի հիմնադիր, մրցում է նշանաւոր Մարութ եպիսկոպոսի՝ Տիգրանակերտի աւերակների տեղում Նփրկերտի հիմնադրի հետ: Կորդուքի քարոզիչ Շաղիտան յայտնի է նաև ասորիներին, որոնք նրան վերագրում են եգիպտական ծագում և համարում են Մար Աւգէնի աշակերտը: Նա Արիոսի հանդէս գալուց առաջ արդէն Աթանասիոս /!/ կաթողիկոսի ղեկավարութեամբ հմտանում է աստուածային ուսմունքի մէջ: Այնուհետեւ կրում է արիոսեան աղանդաւոր Վալերիանոս դատաւորի հալածանքները: Ապա նա գալիս է Պախոմիոսի վանքը: Աւելի ուշ սուրբ Մար Աւգէնի հետ ուղեւորւում է արեւելք, գալիս է Մծբին եւ բնակութիւն հաստատում Իզլա լեռան վրայ: Նրանք մասնակցում են Մծբինի տաճարի եւ Մար Յակոբ եպիսկոպոսի՝ տապանին նւիրւած տաճարի օծման արարողութեանը: Դրանից յետոյ Շաղիտան վերադառնում է Բէթ Զաբդէ, ուր բնակւում է Մեզանեաֆ հեթանոսական գիւղի մօտակայքում, Փենեկից (Փոենիկա) մօտ մէկ մղոն հարաւ, Շերա լեռան վրայ, մի անձուկ քարայրում. մահանում է Մաւսիլէ գիւղի մօտ 95 տարեկան հասակում[183]: Շաղիտայի եւ Մար Յակոբ Մծբնացու մասին վարքագրական եւ զուտ ասորական մանրամասնութեամբ ու շաղակրատութեամբ պատմւած աւանդութիւն-

ները, յատկապէս տեսիլքները, բազմիցս համընկնում են Փաւստոսի վկայութիւններին[184]: Անտարակոյս, երկու խումբն էլ ծագել է մի ընդհանուր, աւելի հին աւորական աղբիւրից: Սակայն Մար Յակոբի եւ Մար Շաղիտայի մասին աւորական աւանդութիւնները մի մասն են ամբողջ շղթայի, որը խմբաւորւում է Եգիպտոսից սերւած Մար Աւգէնի շուրջ՝ հետապնդելով Միջագետքում կուսակրօնութիւնը եգիպտականից բխեցնելու նպատակ: Սակայն Լաբուրը ցոյց տւեց, որ VI դարից առաջ չի կարող խօսք լինել միջագետեան-պարսկական կուսակրօնութեան վրայ եգիպտականի ազդեցութեան մասին, որ դեռեւս Թոմաս Մարգացուն (832-ի եւ 850- միջեւ) անյայտ էր Մար Աւգէնի (եւ Շաղիտայի) վարքը (այդ մասին, ըստ Լաբուրի, առաջինը վկայում է Բասրայի մետրոպոլիտ Իշոդենախը 10-րդ դարի սկզբներին), որ Մար Աւգէնի անձնաւորութիւնը անյայտ է եւ նոյնիսկ կասկածի տակ է նրա գոյութիւնը[185]: Այսպիսով, Շաղիտայի կարծեցեալ եգիպտական ծագումը աւելի ուշ շրջանի հնարանք է: Այս կողմից ապացոյց չկայ Փաւստոսի այն պնդման դէմ, որ Շաղիտան եղել է քորեպիսկոպոս Դանիէլի աշակերտը:

Դանիէլի աշակերտներից էին նաեւ Բասէնի եպիսկոպոս Արտիթը, որն ապրեց մինչեւ Խոսրով երրորդ եւ Արշակ երրորդ թագաւորների օրերը (Փաւստ., VI, Է), եւ Գինդը Տարօն գաւառից, որ էր «գլուխ աբեղայից, եւ վարդապետ միանձանց, եւ առաջնորդ մենակեցաց, եւ վերակացու վանօրէից, եւ ուսուցիչ ամենայն անապատաւորաց»: Նա բնակութեան տեղ էր ընտրել այն անապատը, որտեղից բխում էին Եփրատ գետի ակունքները: Նա բնակւում էր ժայռերի ծերպերում, այնտեղ, որ Ոսկիք էր կոչւում, ուր մեծն Գրիգորի երբեմնի առաջին կացարանն էր եղել[186]: Այդ նոյն ծերպերում բնակւում էր մեծ անապատական Գինդը (Փաւստ., VI, ԺԶ, էջ 280-281):

Հետաքրքիր է, որ քորեպիսկոպոս Դանիէլի մասին չի պահպանւել աւորական աւանդութեան ոչ մի հետք:

Քննելով հայկական հնագոյն աւանդութիւնները կարելի է ենթադրել, որ Հայաստանում Լուսաւորչի ժամանակ իրականում եղել է երեք եպիսկոպոս. Լուսաւորիչն ինքը, նրա որդի եւ աջակից Արիստակէսը եւ առաջնորդական գլխաւոր տեղապահ, Տարօնի քորեպիսկոպոս Դանիէլը:

## 4. ՀԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԸ ՆԻԿԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՄ

Վերոյիշեալ եզրակացութիւնը հիմնականում էապէս

համապատասխանում է Նիկիայի հայրերի ցուցակին[187]: Դրանք, ինչպես կը տեսնենք, Մեծ Հայքից յիշատակում են միայն երկու եպիսկոպոս: Երկրորդ լատիներէն ցուցակում գրւած է.

XIV Armeniae Maioris
104 Arista[r]ces
105 et Acrites Armeni
եւ համապատասխանաբար հայերէնում.
VIII ի Մեծաց Հայոց
100 Արիստակէս Հայոց
101 Ակրիտէս
նոյնը յունարէնում.
XV Ἀρμενίας
103 Ἀρουστάκης
104 ⟨Α⟩κρίτης
ղպտիերէնում.
այս երկուսը միւս Հայաստանից են.
112 Arirteus in ⲐⲀⲢⲘⲈⲚⲒⲀ
113 Arikes in ⲐⲀⲢⲘⲈⲚⲒⲀ:
Արաբերէն ցուցակում (էջ 170) պարզապէս գրւած է.
ارساكيون الاكريبس 238. կարդա՛
ارستكيوس Արիստակիոս
الاكريتس ալ Ակրիտէս
Չորս ցուցակում էլ երկու անունից մէկը՝ տող խնայելու նպատակով, միացւել է յաջորդ երկրանւանը.

III Լատ. XIV Armeniae Maioris
105 Aristecisus//Diosponti
106 Acrites
Նիտրական վանքի գրացուցակում (էջ 104).
ܕܐܪܡܢܝܐ ܪܒܬܐ ܚܣܝܐ XIII Մեծ Հայքից հինգ
ܐܪܝܣܛܩܣܘܣ ܕܐܪܡܢܝܐ 106 Արիսքաքիոս Հայաստանից
ܐܪܝܩܝܣ ܕܕܝܘܣܦܘܢܛܘܣ 107 Աքրիքեւ // Դիոսպոնտոսից
Միխայէլ պատրիարքի ժամանակագրութիւնում.
Մեծ Հայքից 2.
ܪܣܛܩܝܣ ܕܐܪܡܢܝܐ 111 Ռըստակէս Հայաստանից
ܐܪܝܪܝܛܘܣ ܕܕܝܘܣܦܘܢܛܘܣ 112 Ա/ր/քրիտոս // Դիոսպոնտոսից[188]:
Արղիլօ Կոքացու ցուցակում /էջ 128/.

ܕܐܪܡܢܝܐ ܪܒܬܐ XIII.

ܕܐܪܡܢܝܐ ܐܪܛܘܣ 108 Ար[իս]տա[կ]ես Հայաստանից

ܕܕܝܘ(ܣ)ܦܢܛܘܣ ܐܪܝܛܘܣ 109 Արիթոս // Դիոսպոնտոսից

Երկու ցուցակում չկայ Ակրիտէս անունը.

Լատ. IV Prouinciae Armeniae Maioris

100 Aristheus

Վատիկանի ձեռագրերի ցուցակում (էջ 72).

37 Ἀρωστάκης μεγάλης Ἀρμενίας

Սակայն ամենահետաքրքիր շարադրանքը առաջին լատիներէն ցուցակում է.

XIV Provinciae Armeniae Maioris

107 Arsaphius Sobmon

108 Acrites

Առաջին անունը հաւանաբար թարգմանուած է ասորերէնից. ܕܨܘܦܢܝܐ ܐܪܣ(ܛ)ܣܘܣ : Ամէն դէպքում Arsaphius-ը *Aristac(h)ius-ի աղաւաղուած ձեւն է, իսկ Sobman-ը, ամենայն հաւանականութեամբ, Σωφηνή է, հայ. Ծոփք, ասոր. ܕܨܘܦܢܝܐ ܐܪܥܐ : Յիշենք Փաւստոսի այն վկայութիւնը, որ Արիստակէսն իր խոստովանական մահով վախճանուեց Ծոփքում: Նա նաեւ քորեպիսկոպոս էր եւ այն էլ Հռոմի վերահսկողութեան տակ գտնուող Հարաւային Հայաստանում[189]:

Այսպիսով անհրաժեշտաբար եզրակացնում ենք, որ Ἀκρίτης-ը, որը չունէր եպիսկոպոսական նստավայր, համապատասխանում է հայկական աւանդութեան առաջնորդական գլխաւոր տեղապահ Դանիէլ քորեպիսկոպոսին:

Սակայն Ἀκρίτης անուան այս ձեւը հայկական չէ[190]: Պէտք է ենթադրել, որ այն հայ-իրանական Վահրիճ կամ Վախրիճ անուան փոխադրու - թիւնն է: Թովմա Արծրունին յիշատակում է Անձեւացեաց տէր մի Վախ - րիճի, որը Ռշտունիքի տէր Տաճատի եւ Վարդան Մամիկոնեանի հետ դուրս է գալիս ուրացող Շաւասպ Արծրունու եւ որպէս մարզպան երկիր ուղարկուած պարսիկ մոգպետ Վրդոյի դէմ. Տաճատի հետ բռնում վերջ - նիս եւ այրում Դւինի Որմիզդի տաճարի կրակարանում, իսկ նրա որդուն՝ քրմապետ Շիրոյին, կախում կրակարանի վերեւի փայտից[191]:

Մաշտոցի եւ Սահակի առաջարկով Վռամշապուհ թագաւորը ուղար - կում է «զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կոչէին. որ էր մերձաւոր Դանիէլի ասորւոյ եպիսկոպոսի»՝ նրան համոզելու, ստանալու հայկական նշանագրերը, որոնք թագաւորը տեսել էր եպիսկոպոսի մօտ[192]: Յայտնի է ոմն Վահրիզ وهرز, որն Անուշրուանի օ -

րօք նւաճել էր Եմէնը: Նրա իսկական անունն է Խորրեհ-զար իբն Նար-սէ: Նա Կաւատի եղբայր Ջամասպ թագաւորի թոռն էր: Ըստ ալ-Մասու-դիի Վահրիզ տիտղոսը Խոսրովը նրան շնորհում է Եմէն ուղեւորւելիս: Մինչ այդ նա Դելումի եւ Դելի մարզպանն էր, որի համար էլ ոմանք նրան տալիս են Դելումցի անունը[193]: Իրականում, ինչպէս երեւում է, նա Վահ-րիզ տիտղոսը կրում էր որպէս Դելումի մարզպան: Այդ է վկայում նաեւ Պրոկոպիոսը ὑπὲρ τῶν πολ. (I 12, 10, էջ 57, 12 Haury) ըստ որի Կաւատ թագաւորը Իբերիայի Գուրգէն թագաւորի դէմ ուղարկում է պարսիկ Բոէ-սին οὐαρίζης-ի տիտղոսով (στρατηγὸν ἄνδρα Πέρσην, οὐαρίζην μὲν τὸ ἀξίωμα, Βόην δὲ ὄνομα): Բոյը պէտք է որ զուտ դելումական անուն լինի, այսպէս Դելումական հարստութեան նահապետը կոչւում էր Բոյա, որը 10-րդ դարում իշխում էր արեւմտեան Իրանում եւ Բաբելոնում[194]: Այստե-ղից հասկանալի է դառնում նաեւ Սեբէոսի վկայութիւնը (գլ. Ժ Ե, էջ 61=44, թարգմ. Մաքլեր): Խոսրով Երկրորդ Ապարվէժ թագաւորի հօրեղ-բայրը՝ Վստամ Պերոզը, յարձակւում է անմատչելի Դելումի վրայ եւ իրեն ենթարկում նրա բանակները: Ապա յարձակւում է Ռայ երկրի վրայ, սա-կայն ոչինչ չկարողանալով անել թագաւորին օգնութեան եկած հռոմէա-կան զօրքի դէմ, կրկին նահանջում է Դելում: Այնուհետեւ նա ամրանում է Պարթեւների երկրում[195]: Այստեղ Վստամը, իրեն ենթարկելով Խորա-սանի բանակները, պատրաստւում է արշաւել Բաբելոն (Սուրիստան), սակայն սպանւում է քուշանների թագաւոր Պարիովկի կողմից, որից յե-տոյ նրա բանակը ցրւում է: «Գնացին նոյնպէս եւ զաւրն Գեղումն՝ որ ընդ նմա, եկեալ հասեալ փութանակի յամուրս աշխարհին իւրեանց: Եւ արքն այնք հայաստանեայք՝ որ ապստամբեալ էին ի Սմբատայ եւ գնացեալք առ Վստամ ընդ նոսա: Իբրեւ գնացին նոքա յերկիրն՝ որ կոչի Կոմշ (Կո-միշ) որ կայ անդէն ի թիկանց Վրկանի՝ յայնմ կողմանէ սարոյն՝ որ ան-ցանէ ընդ մէջ նոցա, եւ հասին ի գեւղն՝ որ կոչի Խեկեւանդ:

Ընդդէմ ելանէր նոցա Շահր Վահրիճ, եւ Սմբատ [Բագրատունին] Գուրկան [=Վրկան] մարզպան հանդերձ բազմաւ. եւ զաւրք Գեղումք ոչ աւելի քան զերկուս հազարս. եւ եղեւ պատերազմ ի վերայ երկրին այնո-րիկ, հարին զզաւրն պարսից, եւ փախստական արարեալ հալածական տանէին, զբազումս սպանեալ եւ զբազումս ձերբակալ արարեալ դար-ձան անդրէն, եւ բանակեցան մաւտ ի տեղի պատերազմին: Եւ արքն այնք հայաստանեայք ընդ նոսա: Մեռան բազումք եւ ի զաւրացն եւ ի հայաստանեայցն՝ որ ընդ մարզպանին Սմբատայ... Զւեցին ամենայն զաւրքն ի տեղւոջէն յայնմանէ, եւ երթեալ հասանէին յամուրս աշխարհին իւրեանց: Յայնժամ զՎահրիճն խնդրէր թագաւորն ի տուն, եւ առ Սմբատ առաքէր շնորհակալութիւն մեծ, զի միամտութեամբ մատուցեալ վաճե-ցաւ, եւ ոչ երող զտեղին. եւ ապա յետոյ ամենեցուն զնայր եւ նա փախըս-

տականն»[196]:

Շահր Վահրիճը, որ պատասխանատուութեան էր կանչուել արքունիք, ըստ երեւոյթին Դելումի փոխարքան էր: Նա չէր կարողացել կանխել դելումցիների՝ Վստամի կողմն անցնելը: Ուրեմն Շահր Վահրիճը («մարզի վահրիճը») նրա տիտղոսն էր: Հաւանաբար Դելումի փոխարքան է եղել նաեւ Վահրիճի (որդի) Վահրիճը[197], որին Պարսկաստանի Շապուհ թագաւորը չորս միլիոն /!/ պարսիկներով ուղարկել էր Հայոց աշխարհի վրայ, եւ Մախազեան[198] կոչուած տեղում նրա բանակը լրիւ ոչնչացւում է հայ զօրավարի կողմից[199]: Այդ մասին խօսւում է նաեւ հետեւեալ գլխում, ըստ որի Կավոսականն տոհմից Դմաւանդ[200] Վսեմականը 900000 մարդով գալիս է Հայաստան, սակայն Վասակ զօրավարը, փախուստի մատնելով նրան, սպանում է զօրքի մէջ:

Այս տիտղոսի ձեւն ու իմաստը ոչ պակաս դժուարութիւն են յարուցում: Յուստին (Iran. Namenbuch, 340 b) բացատրում է «լաւ առատութիւն ունեցող», նոր պարսկ. oṽa rēž, ریز-ից: Չհաշուած իմաստաբանական անհամապատասխանութիւնը, այս բացատրութիւնը քննութիւն չի բռնում, քանի որ երկրորդ վանկում բացակայում է e ձայնաւորը: Աւելի շուտ հակւած եմ կարծելու, ինչպէս ճիշտ նկատել է Հորնը (GIrPh., I, 2, 181), որ -իճ-ը անւանական վերջածանց է, որ սովորաբար հանդէս է գալիս -īč. նոր պարսկ. īz ձեւով: Կրճատ ի-ն հանդիպում է նաեւ երկրների եւ ժողովուրդների անուններում, ինչպէս شيرجان Շերիջան Šn. 61, 515 Ṣahīru' ddin ու 69 արաբ. الشِرِّز aš Širriz, لارجان Լարիջան, արաբ. الارز al Lāriz, Բարիճան Kärnämak XIII 20, ed Anita, Bārič, Vd. 1. 18 Gl., արաբ. لبارز at Tab. I ՃԿԷ 13, Կոֆ-իճ «լեռնական» Recueil des hist. Seldjouci des, o, 4. v, 18, արաբ. قفص, նոր պարսկ. کوچ Kōč Šn., 558,650, 886, 330, VI, 192, 383. 308, 1779. 358, 2387 Mohl Աներիճ «անիրան» Vd. 1, 18 Gl.: Այս վերջածանցը ծագել է հընդ - գերմանական erək-, ək-ից «դառնալով», որը վաղուց ձուլել է -oqu -«տեսնելով», արաբերէն -ak- վերջածանցին: Հմմտ. Joh. Schmidt, Pluralbildungen, էջ 388 եւ հաջ., Darmesteter, Etudes iran., II, 106-115, Bartholomae, GIrPh., I, 1, 96, պարբ. 178, Brugmann, Grdr., d. hմմտ. Gramm. d. indg. Sprachen, II, 1², 1906, 144. 2, 662:

Այն յաճախ հանդիպում է -իկ վերջածանցի հետ=հին իր. -ja, միջ. իր. - čīk, նոր պարսկ. -zī, օր. Սագ-ճիկ Խորենացի. II, Թ. էջ 114, 18. 115, 3 (Թիֆլիս 1913).

արաբերէն سِجزی նոր պարսկ. سکزی Սագ-զի «Սագաստանցի», مروزی Մարւա-զի եւ مرغزی Մարղու-զի «Մարւացի, Մարղուացի», ابرزی Աբար-զի (Vambery, Geschichte von Buchara), հեփթաղների վերջին քաղաքը. Abu ‘l Hasan (Abd ar Rahman b. Muḥammad an Naišabūri, bei Muhammad i Naršachi, Description de Boukhara, p.o., 11, ed. Schefer= ورز Վարզ at Tab. I ۸۹۹, 14-15 T «առար, վար արմատից», հմմտ. Marquart, Eranšahr 308, Über das Volkstum der Komanen, 74, 17 ff, وهزی Վահ-զի (այսպէս 1.)= وخی «Վախանցի» Šn 919, 848. 946, 1342. 994, 580. 1001, 699. 1008, 824. 1017, 962[201]:

Սողդերէնում -čīk վերջածանցով գոյականներից եւ մակբայներից կազմւում են ածականներ, ինչպէս fčambad-čīk «աշխարհիկ» fčambad, äβčambad «աշխարհ»-ից, amank-čīk «ճիշտ», dāt-čīk «արդար» dāt «օրէնք»-ից, pērnam-čīk «առաջին» pēnam «առաջ»-ից: Այս երկու վերջածանցների սպառիչ բացատրութիւնը տուել եմ աւելի քան երեսուն տարի առաջ[202]:

Գ. Հորնը Վահրիճն ածանցում է աւեստ. Wrdra-«յաղթանակ»-ից, ասելով նաեւ, որ աւեստ. vrdrayna-բառը 4-րդ դարում դեռեւս ունէր բաւական հին ձեւեր, եւ որ յունարէն փոխադրութեան մէջ պահպանել է. առաջին r տառը: Հմմտ. ᾿Αρτάγνης (աստուած)՝ Կոմագէնում Նեմրութ դաղի վրայ Անտիոքոս Առաջինի յուշարձանին (Ք.ծ.ա. 1-ին դար). ᾿Ορθάνης հնդոպարթեւների թագաւորը (Ք.ծ.հ. 1-ին դար)[203], Oշլագնo (աստուած)՝ քուշանների Կանէշկի թագաւորի (Ք.ծ.հ. 2-րդ դար) դրամների վրայ[204]: IV դարում, քրիստոնէութեան դէմ Շապուր Երկրորդի (348) հալածանքների շրջանում յիշատակւում է Սելեւկիա գիւղից մի դաւաճան քահանայ [illegible] Վրղրան անունով, որը Հեդաբիյաս (Ադիաբենէ) թագաւորի հրամանով մահապատժի է ենթարկում հաւատացեալ Գուհիշտ-ազադին՝ Կարկհա դէ-Բեթ Սելոքիայից[205]: Երանելի Կանդիդայի նահատակութեան մէջ ասած է, որ նա մարտիրոսուել է Վրղրանի՝ Սասոր թագաւորի պապի օրօք[206]: Բառի այս միջին մեղական ձեւն առկայ է նաեւ Լուսաւորչի աւագ որդու՝ Վրթանէսի, յուն. Οὐρθάνης անուան հիմքում, որ մեզ հասել է հելլէնացած այս տեսքով եւ վերարտադրուել խօսակցական Վրդրան ձեւով: Դրամների վրայ եւ արձանագրութիւններում պաշտօնական միջին պարսկ. կարդացւում է Vrhrān (տե՛ս Herrfeld,

Paikuli 171 b) տառր. [illegible] Վարահրան, յուն. տառադարձուած է Οὐαραράνης, Βαραράνης, Γοραράνης, Οὐαράνης, որ գռեհկացնելով դարձել է Վռհրամ: Վերջին ձեւը 4-րդ դարի վերջում արդէն անցել է հայերէնին. սրանից էլ այնուհետեւ առաջացել է ուշ միջին եւ նոր պարսկերէն Vahram, Bahram, հայ. Վահրամ, յուն. Βαράμ, Βαράμης Theophyl. Sim. passim, Theophanes, p. 262, 15-267, 6, Theophanes, p. 326, 14, վրաց. Գուրամ, Գւարամ ձեւերը: Հմմտ. Nöldecke, Gesch. der Perser und Araber էջ 46, ծնթ. 3, Lagarde, Arm. Stud. թիւ 2084, Justi, Iran. Namenbuch, 361 f., Hübschmann, Arm. Gr., 78: Հայերէն ճիշտ ձեւը Վահագն է (ստուած/ <*Warhagn< V(r)drayn առաջին r-ի տարնմանական սղումով, որտեղից էլ առաջացել է հայկական սովորական Վահան անձնանունը: Հմմտ. Marquart, UGE, I, 42, 45, ծնթ. 3, Հիւբշման, նոյն տեղը, 75-77. 509: Այս կազմութիւնը հաստատում է Վահանառիճ «Վահանի պաշտամունքի վայր» գիւղանուան շնորհիւ, որ պահպանուել է մի արձանագրութիւնում. Գարեգին Յովսէփեան, մաս 3-րդ, Վաղարշապատ, 1913, թիւ 23, տող 8, էջ 17:

Այս իմաստով կարծում եմ, որ պէտք է ելնենք աւեստ. *vadra-«յաղթանակ», van-«յաղթել» բառից, հմմտ. գոթ. vananā-f «յաղթանակ»: Միջին իր. այն դառնում է *vahr, ինչպէս ǧan-ǧadra-zahn «թոյն» (Hübschmann, Pers. Stud., 71, Horn, GIrPh I, 2, 91, պար. 40, 5): Այսպիսով Վահրիճ տիտղոսը նշանակել է «յաղթական»: Արծրունու յիշատակած Վախրիճ ձեւը Վանի բարբառով է: Նա բաւական յաճախ է գործածում խ-ով ձեւերը՝ դասական հայերէնի h-ի փոխարէն. խեռ, Շիրակացի, 3-րդ, ԻԹ, էջ 263, 28, Χέρτ Կոս. Ծիրանածին, հեռ, Շիրակացի, ԼԲ, 19 եւ այլուր, Բախղ II, Գ, էջ 85, 16, Բախխ I, Գ, էջ 25, 24, Բախղ Շախաստան II, էջ 88, 3, Ճախուկ, սովորաբար՝ Ճահուկ, խեխտաղը I, Գ, էջ 25, 22, 27, 32, խրախստ III, Դ, էջ 147, 4, Շախրիքն I, Գ, էջ 28, 7: Նոյն առանձնայատկութիւնն [illegible] Վասպուրականի անանուն պատմութիւնում (սխալմամբ վերագրւում է Շապուհ Բագրատունուն), օր. Խաղամակերտ բերդ էջ 63, Խանդամաշէն էջ 63: Վանի ներկայի բարբառում հայ. h-ն որպէս կանոն տալիս է խ: Հմմտ. H. Adjarian, Lautlehre des Van-Dialekts, Žs. f. arm. Phil., I, 130[207]:

Ինչ վերաբերում է ᾿Αχρίτης գրութեան ձեւին, ապա հնուց ի վեր յոյները մեծ դժուարութեամբ են վերարտադրել շփական v հնչիւնը, ինչպէս նաեւ կիսաձայն w-ն, որ այլեւս նրանք չունեն: Յաճախ va, ver վանկը բառասկզբում եւ դուրս է մղւում o-ի կամ w-ի միջոցով, օր. ᾿Ορoσάγγαι εὐεργέται Her. 8, 85=հին. պարսկ.

*վարուշանկա «ընդլայնուած ծառայութիւնից» *Ωξος Arr. III, 29, 2. Οξος Strabo Ptol., աւելի ճիշտ՝ Oaxes Justin., I 8, 2=հին իր. Vaxšu, *Οξυάρτης=հին իր. Վախշու-վարտա «Վախշու աստծոյ կողմից ընտրուած», *Οξυδάτης Arr. III, 20, 3 IV, 18, 3 «Վախշու աստծոյ կողմից նւիրուած». *Ωχος (գետ)=*Վահու-կամ *Վահուի. *Ωσάκης Kass. Dion, 40, 28, 3: Cic. ad Attic. V, 20, աւելի ճիշտ՝ Οὐασάκης Arraian ἔκταξις κατ' *Αλανῶν 12=հայ. Վասակ. *Ολαγάσου դրամներ=ապառնի (դրամներ) Վաղարշ: Այնուհանդերձ հազուադէպ չէ շփականի սովորական տղումը, օր. *Ακης Her. 3, 117=*Վահու-, ինչպէս նաեւ Վահուի. *Αρδιαῖοι իլլիրիական արմատ, աւելի ուշ Οὐαρδαῖοι Strabo, VII, 5, 5, էջ 315: Հռոմէական շրջանում երեւան են գալիս գրութեան աւելի ճիշտ ձեւեր ου կամ β տառերի շնորհիւ, յատկապէս հռոմէական պետական պաշտօնեաների մօտ, ինչպիսիք էին Արրիանոսը, Կասսիոս Դիոնը, Պրոկոպիոսը, Յովհաննէս Լաւրենտիոս Լիդոսը եւ ուրիշներ, օր. Οὐολόγαισος, Βολόγεσος լատ. Վոլոգեսես, Οὐατίνης, Οὐαράζης, Οὐαραράνης եւ ուրիշներ, այսպէս մինչեւ. Սկիլեսէսը 11-րդ դար *Ασπρακανία=ἡ ἄνω Μηδία II, 462, 4. 464, 11. 482, 1. 512, 11. Βαασπρακάν-ի կողքին II 570, 20. 573, 21. 576, 20. 580, 9. 590, 17. 464, 11. Βασπαρακανά (այսպէս 1.) Konstantin Porphyrog., De administr. imp. c. 43, p. 189, ὁ Βασπαρακανίτης նոյն անդում, c. 45, p. 201, 7=հայ. Վասպուրականի: Սակայն Թէոփանէսը էջ 326, 14, գրում է *Αράμ=միջին պարսկ. Վահրամ: «Պարսիկների եւ հայերի պատերազմների պատմութիւն» բնագրի, որից պահպանուել է միայն սկիզբը որպէս յաւելուած Ագաթանգեղոսի ներածութիւն, անյայտ հայ հեղինակը գրում է Οὐαλάρσης=հայ. Վաղարշ[208]:

Հայերը, 4-րդ դարում հետեւելով այս կիրառութեանը, հեղէնացրել են կաթողիկոսների անունները: Փաւստոսը (VI, ԺԵ. էջ 279) Շահակի յետնորդին որպէս «եպիսկոպոսապետ» յիշատակում է Ասպուրակ անունով, Διήγησις-ում c. XVII *Ασπουρακέσης, որը Ասպուրակէս ձեւով վկայում է նրա հայկական աղբիւրում (Անանիա Շիրակացի), եւ այդ աղբիւրից էլ անցնում է Խորենացուն (III, ԻԱ, էջ 309, 21. 49, էջ 320, 5)Ասողիկին (II, Ա, էջ 73-21): Ասպուրակէսը միջ. պարսկ. վասպուրակի «առան որդիներին պատկանող» հեղէնացուած ձեւն է: Այս բառը հայերէնում օգտագործուել է նաեւ որպէս հասարակ գոյական[209]:Այդ նոյն Διήγησις-ում

Փաւստոսի Փառէն կաթողիկոսը վկայված է ὁ Φαρνεσὲχ ἀπὸ τῶν Ἀσπράκων (τῆς Ἀστισὰτ) χώρας «վասպուրական Աշտիշատ վայրից», իսկ ըստ Խորենացու՝ III, ԺԶ, էջ 275, 9՝ «զՓառներսեհ ոմն յԱշտիշատից Տարաւնոյ». Յովհ. Կաթ.՝ էջ 27, 33/34= 38՝ «զոմն Փառներսեհ անուն յԱշտիշատէ». Ստ. Ասողիկ՝ II, Ա, էջ 69, 14՝ «որ էր յԱշտիշատայ Տարօնոյ»[210]: Այն, որ վասպուրական բառը որպէս ազգանուական դասի անուանում, օգտագործել է նաեւ Հայաստանում, ապացուցում է հետագայ ամենամեծ նահանգի՝ Վասպուրականի, անունով[211]:

Օտար կիսաշփականները č(=tš), č‘(=tš), c(=ts), c‘(=ts), ǧ(=dž), dz հնուց ի վեր յունարէնում վերարտադրուել են ատամնային բաղաձայնների միջոցով: Հմմտ. օր. Τριτανταίχμης Her. I, 192. VII 82. 121=հին պարսկ. Čidran'taxma, Ἀσπαθίνης=հին պարսկ. Aspačanāh, Τισσαφέρνης լիկ. Cirraprāna, Aretissa Plin. h. n. VII 127=Արճիշոյ՝ Արճէշի սեռ.[212] Artianius (այսպէս 1.), Sallust. hist. rel. IV, 74, p. 187, ed. Maurenbrecher=հայ. Արածանի[213], Nitibi, Nitibin, Jul. Capitolinus, Gordiani tres 26, 6, 27, 6, Trebellius Pollio, Gallieni duo, 10, 3. 12, 1, Nitibeni, նոյն տեղում, 10, 3, Nitibis Rufus Festus, Brev. 27, 2 GPB=ասոր. ܢܨܝܒܝܢ Nəcībīn[214]: Յայտնի չէ, թէ Պրիսկոս պատմիչը, որ պաշտօնական հաղորդումներից եւ որպէս դեսպան Աթիլայի արքունիքում անձամբ լսել էր բարբարոսներից բազմաթիւ անձնանուններ եւ ժողովուրդների անուններ, ի՞նքն է կիսաշփականը ճիշտ արտայայտել τζ կապակցութեամբ: Konst. Poryhyr. Excerpta de legat., p. 130, 8-9, ed. de Boor (Berlin, 1903)=Hist. gr. min. I, 289, 26 Dindorf ձեռագրերում՝ BE ἀκατζίρων MP ἀκατζόραν, նոյն տեղում, տող 24=299. 150 /=բոլոր ձեռագ./ κατζίρων: Այնինչ՝ էջ 136, 3=306, 11, Dind. ο ἀκατήρων, ինչպէս նաեւ 139, 23=310, 30, Dind., 586, 12 =fr. 30, էջ 341, 15 Dind. τοῖς Ἀκατίροις Οὔρροις. 588, 10=fr. 37, էջ 346, 7 Dind. Ἀκατίροις, Acatzirorum gens Iordan. Get. պարբ. 36, էջ 63, 8 Mommsen (acatirorum saec. IX), Agaziros Geogr Rav. IV, 1 էջ 168, 14 Jordanes, ܟܙܪ Chasar Zach. Rhetor XII, 7, էջ 253, 18, թարգմ. Արենս եւ Քրիւգեր: Այս տուեալների հիման վրայ կարելի է եզրակացնել, որ Պրիսկոսն ինքն է գրել Ἀκάτιροι, որ սկզբնական շրջանում այս անունը ձեռագրերում տողի վերեւում կամ լուսանցքում մեկնաբանւում էր 6-րդ դարում գործածութեան մէջ մտած Ἀκάτζιροι գրութեամբ: Սա վերաբերում է նաեւ Ultzinzures-ին Jordan, Get., պար. 272, էջ 128, 23 Mommsen, որի փոխարէն ինչպէս նաեւ Emnetzur-ի (այսպէս H,

emmedzur PV) եւ Ultzindur-ի համար Jordan., Get., պարբ. 266, էջ 127, 2 Ագաթիա-սը VII, էջ 365, 22, գրում է Οὐλτίζουροι: Կոստանդին Ծիրանածինը (de legat., 121, 4=276, 7 Dindorf) գրում է 'Αμιλζύροις καὶ 'Ιτιμάροις καὶ Βοίσκοις, որի համար Յորդանեսը (պարբ. 126, 90, 11-12/ գրում է Alpidzuros (Alpilzuros A saec. XI), Alcildzuros, Itimaros, Tuncursos et Bois cos, AMIIZOYPOIC ձեւն առաջացել է ALNIIZOYPOIC-ից, ուրեմն Պրիսկոսը գրել է 'Αλπιζούροις=թուրք. *alp-il-ǧur<*al-pil-čur եւ 'Αλκίλζουροι=*äl-kül-ǧur<äl-kül-čur ձայնակաձից յետոյ č-ի փափկացմամբ: Τούνσουρες-ը= թուրք. *tun-čur-ն է: Պրիսկոսը նմանապէս գրում է Δεγγιζίχ (Exc. de legat., 588, 6. 24. 28=346, 1. 26, 347, 1 Dindorf), որը Յորդանէ-սը (Get., պարբ. 272, էջ 128, 21) յիշատակում է Dintzic ձեւով: Այստեղից հետե-ւում է, որ τζ, tz-ի փոխարէն č c գրութեան ձեւը, որ իշխում է Պրոկոպիոսի մօտ, եւ լատ. dz-ն՝ ǧ, dz-ի փոխարէն, կիրառութիւն է գտել միայն 6-րդ դարում:

Զափազանց դժար է անշուշտ իր հնչիւնախմբի վերարտադրումը χρ-ով: Այ-նուհանդերձ որպէս ստոյգ համեմատութիւն կարելի է մեջբերել հետեւեալ նա-խադասութիւնները, որ բաղդմանուած են յունարէն Ագաթանգեղոսում (պարբ. 18), որ էր նախարար ումն ի Ստահր գաւառէ=τῆς τῶν Σταχριτῶν πατρίδος σατράπης ὑπῆρχεν եւ (պարբ. 20) համբարձելոյ բազատրութեան Ստահ-րացւոյն=τῶν ἀπαρθέντων Σταχριτῶν[215]:

Այստեղ փաստօրէն իր հնչիւնախումբը յունարէն վերարտադրւած է χρ-ի մի-ջոցով: Իրապէս Պարսից մայրաքաղաքը նոր պարսկերէն (արաբացւած) կոչում է اصطخر Istachr[216], աւեստերէնում եւ առկայ է staxra- բառը: Սակայն եւ հայերէ-նում[217], եւ ասորերէնում Ստահր արտասանական ձեւը վկայւած է որպէս հին ձեւ, Synod. orient., էջ 37, 4. 43, 25=276. 285 ed Chabot a. 420. 424, ܐܣܛܚܪ anhajt Istahr:

Այսպիսով ապացուցելով, որ Վահրիճը «յաղթական» տիտղոս է, եւ ʼΑκρίτης-ը այդ անուան զուտ յունարէն գրութիւնը, բոլոր վերապահումնե-րով հանդերձ համարձակւում եմ ենթադրել, որ Վաhրիճը քորեպիսկոպոս Դանիէլի մականունն է:

## 5. ՎՐԹԱՆԷՍԸ ԵՒ ՆՐԱ ՈՐԴԻՆԵՐԸ

Վրթանէսի օրօք եւս կաթողիկոսութիւնը ծայրամասերում գերազան-ցապէս զբաղուած էր քարոզչութեամբ, թէեւ այդ ժամանակ բացի կաթողի-կոսի ծխական մեծ համայնքից ստեղծուել էին երկու նոր եպիսկոպոսու-թիւններ, չնայած հեթանոսութիւնը երկրի ներսում, նոյնիսկ Մայր եկեղե-ցու նստավայր Աշտիշատում դեռեւս խոր արմատներ ունէր[218]: Փաւստո-սը պատմում է նաեւ, որ Վրթանէսը իր ծերութեան ժամանակ ունեցաւ երկւորեակ որդիներ, «եւ կոչեաց զանուն երիցուն յանուն հաւր իւրոյ Գրիգորիս, եւ երկրորդին Յուսիկ: Որք սնան զառաջեաւ թագաւորին Հայոց, եւ ուսման գրոց փոյթ ի վերայ կալան, ուսուցանել զնոսա: Ապա երէց որդին Գրիգորիս եհաս յեպիսկոպոսութիւն կողմանց Աղուանից եւ Վրաց, վասն հոգեկիր առաքինի արգասեացն, քաջեհասակ, եւ զգիտու-թիւն Աստուծոյ յանձին կրելով: Ոչ ամուսնացաւ նա, այլ ի հնգետասա-նամենից եհաս յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Վրաց եւ Ա-ղուանից, այսինքն սահմանացն Մազքթաց: Երթեալ նորոգեաց անդ զե-կեղեցիսն լուսաւոր կարգօք, առաջնոյն Գրիգորի՝ հաւրն[219] գործոցն նմա-նեալ»[220]:

Սուրբ պատրիարք[221] Գրիգորիսի վախճանի մասին.

«Այլ վասն Գրիգորի եպիսկոպոսի, որդւոյ Վրթանայ, եղբօրն Յուսի-կան, որ կաթողիկոսն էր կողմանցն Վրաց եւ Աղուանից, իբրեւ եկաց սա յիւրում պաշտամանն, մինչ դեռ մանուկն եւս էր, շինեաց նորոգեաց զա-մենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, եւ ձգեցաւ ի գաւառակողմանցն Ատրպատականի:

Քարոզ ճշմարտութեան հաւատոցն Քրիստոսի լինէր նա, եւ առաջի իսկ ամենեցուն էր սքանչելի եւ զարմանալի, խստագոյն ու դժւարագոյն անհամարք ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն, պա-հօք եւ սրբութեամբ, տքնական հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմու-թեան առ Տէր Աստուած կանխելոյ վասն ամենայն մարդոյ: Ձաւեստարա-նական ընթացսն եւ զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ շնորհօքն Աստու-ծոյ առանց պակասութեան տանէր. առաւել եւս փութայր, զուն եղեալ յորդորելով զամենեսեան առ ի բարեացն քաջալերութիւն, զցայգ եւ զցե-րեկ պահօք եւ աղօթիւք եւ ուժգին[222] խնդրուածովք եւ բարձրակալ կա-

տարման հաւատովքն՝ մերձաւորաց եւ հեռաւորաց զհոգեւոր եռանդն ա-ծէր. իբրեւ զպատերազմատր նախատակ միշտ զանձն ի կրթութիւն եւ ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց եւ վշտաց, առ ի տալ պատասխանի ամենայն համարձակութեամբ, վասն ճշմարտութեան հաւատոցն մարտնչել որ վասն Քրիստոսի:

Եւ իբրեւ ուղղեաց եւ նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այ-նոցիկ, (անցաւ նա Կուր գետը, բարբարոսների մեծ քաղաքի տիրու-թեան սահմանը)[223], եհաս նա մինչեւ ի ճամբար բանակին Արշակունեայ արքային Մազքթաց, որոյ անուն իւր Սանէսան[224] կոչէր: Քանզի եւ նոցա եւ Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան: Եւ եր - թեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց, իշխանին բազմութեան զօրացն[225], եւ եկաց առաջի նոցա, սկսաւ քարոզել եւ աւետարանել նոցա զՔրիստոս: Նաև ցնոսա՝ թէ ծանեայք զԱստուած, լուան եւ ընկալան զա-ռաջինն եւ հնազանդեցան: Ապա սկսեան բննել զօրէնսն Քրիստոսի, եւ ուսան ի նմանէ՝ թէ ատելի է Աստուծոյ աւարութիւն եւ յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկու - թիւն այլոց ստացուածոց: Ապա այսպիսի իմն իրօք իբրեւ լուան, զայրա-ցան ընդ բանս նորա եւ ասեն. Զի ոչ յափշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, ի՞ւ կեցցուք, զի ոչ յերիվար հեծցուք ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց: Այլ, ասէին, այս խորհուրդ Հայոց թագա-ւորին է. զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ զմեր արշա-ւանս ասպատակութեան հինի յաշխարհէն իւրմէ. այլ եկայք զսա սպա-նեցուցուք ի միջոյ, եւ մեք ի Հայս արշաւեսցուք, աւարաւ զմեր աշ-խարհս լցցուք[226]:

Ապա շրջեցաւ թագաւորն, եւ լուաւ բանից զօրացն իւրոց. եւ կալան ձի մի ամեհի, կապեցին կախեցին զմանուկն Գրիգորիս զգաւոյ ձիոյն, եւ արձակեցին ընդ ծովեզեր դաշտին Հիւսիսական ծովուն (Կասպիականի) մեծի, արտաքոյ իւրեանց բանակին ի դաշտին Վատնեայ[227]: Եւ այսպէս սպանին զառաքինին քարոզն Քրիստոսի զմանուկն Գրիգորիս[228]: Եւ ապա բարձին զնա որք ընդ նմա երթեալ էին ի գաւառէն Հաբանդայ, եւ բերին ի գաւառն իւրեանց ի կողմանս Աղուանից ի սահմանս Հայոց ի Հա - բանդ[229], ի գեօղն՝ որ անուանեալ կոչի Ամարազ: Եւ եդին զնա առ եկեղե-ցեաւն, զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի, հաւուն Գրիգորիսի՝ քահանայապետին մեծի աշխարհին Հայաստան երկրին: Եւ ամ յամէ աշխարհաժողովութեք ի մի վայր ժողովեալ կողմանցն այնոցիկ եւ աշ - խարհաց գաւառացն այնոցիկ, զտօնս զօր տօնին զյիշատակ քաջու - թեան նորա»[230]:

Գրիգորիսի սպանութեանն անմիջապէս հետեւում է հիւսիսային ցե - ղերի յարձակումը Հայաստանի վրայ, որ տարածւեց մինչեւ հռոմէական

ու պարսկական սահմանները, Սատաղից մինչեւ Ատրպատականի Գանձակ քաղաքը: Թշնամին մօտ մէկ տարի մնաց երկրում, իսկ նրա Սանեսան թագաւորը իր գնդով հաստատուեց Վաղարշապատ մայրաքաղաքում: Միայն սպարապետ Վաչէին՝ Արտաւազդի որդուն, Մամիկոնեանց ցեղից, «զի երբեալ էր նա ի ժամանակին յայնմիկ զերկայն ճանապարհս ի կողմանս Յունաց», յաջողուեց հաւաքել նախարարներից քաջերին եւ ոչնչացնել թշնամուն: Հաւանաբար Վաչէն Յունաց աշխարհն էր գնացել հռոմէական օգնական զօրք բերելու, եւ երկրի ազատագրումը հնարաւոր եղաւ միայն հռոմէացիների օգնութեամբ: Այս մասին մանրամասնութիւններ հաղորդելուն խանգարել է Փաւստոսի հայկական ազգային սնափառութիւնը: Կարելի է այդ արշաւանքը բաւական ճիշտ թւագրել, եթէ զուգադրենք հռոմէական կառավարութեան պատասխան քայլերին:

Զարմանալի է, որ յունահռոմէական աւանդութիւնների բեկորներում արշաւանքի մասին հետքեր չեն մնացել, չնայած այն հասել է մինչեւ Հռոմէական կայսրութեան սահմանները: Սակայն Oringo Constantini imperatoris (այսպէս կոչւած անանուն Valisii)-ում պահպանուել է հետեւեալ հանելուկային, սակայն կարեւոր վկայութիւնը. Dalmatium, filium fratris sui Dalmati, Caesarem fecit. eius fratrem Annibalianum data ei Constantina filia sua regem regum et Ponticarum gentium constituit[231]: Նոյնը Աւրելիոս Վիկտորի յաւելազրած համառօտութեան մէջ, c. 41, 20. Hi reguli has partes regendas habuerunt, Annibalianus Dalmatii Caesaris consanguineus Armenian nationesque circum socias: Chron. Pasch. I 531, 16-532, 3 a. 335.

καὶ Δαλμάτιον τὸν υἱὸν τοῦ ἀδελφοῦ αὐτοῦ Δαλματίου τοῦ κηνσάριος Καίσαρα ἀνηγόρευσεν πρὸ η' καλανδῶν ὀκτοβρίων... καὶ Ἀννιβαλιανὸν ῥῆγα προχειρισάμενος ἐνέδυσε...οκκηρὰν χλαμύδα καὶ κατὰ Καισάρειαν τῆς Καππαδοκίας ἀπέστειλεν

Զոսիմոսի վկայութիւնը աւելի անորոշ է (2-րդ, 39,2).

συνῆρχον δὲ αὐτοῖς τρόπον τινὰ Δαλμάτιος, Καῖσαρ ὑπὸ Κωσταντίνου κατασταθείς, ἔτι δὲ Κωνστάντιος, ἀδελφὸς ὢν αὐτοῦ, καὶ Ἀννιβαλιανός, ἐσθῆτι χρώμενοι κοκκοβαφεῖ καὶ περιχρύσῳ, τῆς τοῦ λεγομένου νωβελισσίμου παρ' αὐτοῦ Κωνσταντίνου τυχόντες ἀξίας αἰδοῖ τῆς συγγενείας.

Կայսրութեան այս բաժանումը տեղի է ունեցել 335 թ. սեպտեմբերի 18-ին Կոնստանդինի երեսնամեակի տօնակատարութիւնից յետոյ: Ինչպէս ցոյց են տալիս համառօտութեան մանրամասն շարադրանքը եւ

«արքայից արքայ» տիտղոսը. Հանիբալիանոսի նպատակն էր, որպէս գերագոյն թագաւոր՝ նստավայր ունենալով Կեսարիան, իր հսկողութեան տակ առնել Վրաց եւ Հայոց վասալ պետութիւնները, Դիոկղետիանոսի գրաւած Հարաւային Հայաստանի հինգ սատրապութիւնները, ինչպէս նաեւ Բոսֆորի թագաւորութիւնը: Ինքնին նշանակալի այս իրադարձութիւններն ընթանում էին Փաւստոսի նկարագրած հիւսիսային ցեղերի ճնշման պարագայում: Կասպիական երկու դռների (Դարիալ եւ Դարբանդ) գրաւումից եւ աչալուրջ պաշտպանութիւնից կախուած էր ոչ միայն աւատական երկու պետութիւնների՝ Վրաստանի եւ Հայաստանի ապահովութիւնը, այլեւ այն հանգամանքը, որ, ինչպէս սովորեցնում է պատմութիւնը, Հիւսիսային Կովկասի տափաստանների վաչկատուն ցեղերը, կիրճերից մէկը նուաճելով, Վրաստանով եւ Հայաստանով հեշտութեամբ շարժւում էին դէպի հռոմէացիների երկիրը: Սանեսանի այդ յարձակումը կրկին անգամ փաստում է, որ հարաւկովկասեան պետութիւնների քաղաքական ու ռազմական կառոյցներն ի զօրու չէին դիմագրաւելու յանկարծահաս անակնկալներին: Մազքութների թագաւորի արշաւանքը եւ Գրիգորիսի նահատակութիւնը տեղի են ունեցել համապատասխանաբար 335 թ. գարնանը եւ ամռանը, աւազակախմբերի ոչնչացումը՝ 336-ին: Հանիբալիանոսի թագաւորութիւնն ապացուցւում է նաեւ դրամներով[232]: Դալմատիոսին 357 թ. տեսնում ենք Միջագետքում[233], եւ նոյն թւականին զինուորական մի ապստամբութեան ժամանակ երկու եղբայրներն սպանւում են[234]:

**Մազքութք** (Փաւստ. միայն յոգնակի սեռ. **Մազքթաց**, III, Ե, էջ 10, 11, Զ, էջ 14, 8. 11, Է, էջ 15, 19, 21. 16, 17. 17, 2. 16, ինչպես նաեւ Սեբէոս, գլ. II, էջ 30, 14=12, թարգմ. Մաքլեր , Ստ. Ասողիկ, II, Դ, էջ 112, 23, Եղիշէ, գլ. 8, էջ 351 (Վենետիկ, 1864), Մովս. Կաղ., 1-ին, Ժ, էջ 101, 10 (Փարիզ, 1860), ԺԴ, էջ 126, 21. 22. 128, 10. 2-րդ, Ե, էջ 220, ԺԶ, էջ 94, 19 հայց., Մովս. Խոր., 2-րդ, ՁԶ, էջ 234, 8, 2-րդ, ԺԴ, էջ 126, 8 հայց. (ալաններին անունն է, որ Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութեան մէջ (էջ 77, 69. 83, 94-95) դարձել է Μασαχούτων Οὔννων, «Պատերազմի պատմութեան» սկզբում (էջ 4, 16) ճիշտ թարգմանված է τῶν σκληροτάτων Μασσαγετῶν 21-րդ տողը՝ ἡ τῶν Μασσαγετῶν βασιλεία[235]:

**Մասքութները, որ ծագումով անիրանական, հետագայում միայն իրանացուած, քոչւոր ցեղեր էին, հնում բնակւում էին Ներքին Յախարտեսի եւ Արալեան ծովի միջեւ: Միհրդատ Եւպատորի ժամանակ նրանք իրենց իշխանութիւնն ընդարձակեցին մինչեւ Հիւսիսային Կովկաս, համադաշնութեանը միացրին մի շարք այլ իրանական քոչւոր ցեղեր, ստանալով քաղաքական նոր անուն *Aορσοι կամ Arzvac արեւմտաօս. xvarr իր. xorr «ղաւ»[236]: Այնուհետեւ, երբ նրանց իշխանութեան միջնակէտը գնալով մօտենում էր Հիւսիսային Կովկասին,**

եւ նրանք բազմաթիւ այլ ցեղեր միաւորեցին. Ք.ծ. ի. 1-ին դարի կէսերին ստացան ալան քաղաքական նոր անունը, յուն. 'Αλανοί <*arjan-«իրանացի»[237]: Սակայն Μασσαγέται հին անունը երբեք չմոռացուեց, եւ Կասսիուս Դիոնը (69, 15, 1, հ. 3, 235, հրատ. Boissevain) պարզորոշ վկայում է ալանների ու մասքութների նոյնութեան մասին. ὁ μὲν οὖν τῶν 'Ιουδαίων πόλεμος ἐς τοῦτο ἐτελεώτησεν, ἕτερος δὲ ἐξ 'Αλανῶν (εἰσὶ δὲ Μασσαγέται) ἐκινήθη ὑπὸ Φαρασμάνου (Վրաստանի թագաւորին) καὶ τὴν μὲν 'Αλβανίδα καὶ τὴν Μηδίαν ἰσχυρῶς ἐλύπησε, τῆς δ' 'Αρμενίας τῆς τε Καππαδοκίας ἁψάμενος, ἔπειτα τῶν 'Αλανῶν τὰ μὲν δώροις ὑπὸ τοῦ Οὐολογαίσου (Հայաստանի թագաւորին)[238] πεισθέντων, τὰ δὲ κατὰ Φλάουιον 'Αρριανὸν τῆς Καππαδοκίας ἄρχοντα φοβηθέντων, ἐπαύσατο. Հմմտ. Konstantin Porphyrog. Exc. de legat., p. 88, 8-13 ex. de Boor: Այս տեղեկութեան աղբիւրը ոչ այլ որ է, քան Արրիանն ինքը, որի ἔκταξις κατ' 'Αλανῶν-ից ցաւօք պահպանուել է միայն մի պատառիկ: Արրիանից է օգտուել նաեւ Ամմիանոս Մարսելինոսը, հմմտ. 31, 2, 12. Hoc expeditum indomitumque hominum genus (Hunorum gens)... ad usque Halanos pervenit, veteres Massagetas etc.; 22, 8, 38; Arimphaei..., quos amnes Chronius et Bisula praeterfluunt; iuxtaque Massagetae, Halani et Sargetae, aliique plures obscuri etc.; 23, 5, 16: namque ut Lucullum transeam vel Pompeium, qui per Albanos et Massagetas, quos Alanos nunc appellamus, hac quoque natione perrupta vidit Caspios lacus etc. Այնուհետեւ պատմւում է, որ 350 թ. Շապուհ Երկրորդը դաշնարեցնում է Մծբինի պաշարումը եւ խայտառակ ձեւով նահանջում, քանի որ մասքութները յարձակուել էին Պարսկաստանի վրայ եւ աւերում էին: ἤδη γὰρ καὶ Μασσαγέται τῇ ἐπήλθοσαν καὶ αὐτῇ ἐλυμαίνοντο, Zonaras 13, 7, 13, vol. III, p. 195, Dindorf: Սակայն պարզ չէ, թէ խօսքն այստեղ կովկասեան, թէ խորասանեան ճակատի մասին է, ուրիշ խօսքով՝ Μασσαγέται անուան տակ պէտք է հասկանալ ալաններ, հոներ, կամ ըստ Ամմիանոս Մարսելինոսի (16, 9, 4)՝ Cuseni (քուշանք), կամ Chioniten, այսինքն՝ սպիտակ հոներ (հեփթաղներ):

Ալանները, հաւանաբար հոներից մղուելով, Դարբանդի կիրճից հարաւ ձեռք էին բերել յենակէտ, որտեղից նրանք հոների վարձկան ջոկատների օգնութեամբ սպառնում էին Աղուանքին: Վաչագան թագաւորի օրօք (5-րդ դարի վերջին քառորդ) Ցրի քաղաքում մի հրաշագործութեան շնորհիւ վերագտնուեցին Յովհաննէս Մկրտչի հօր՝ Զաքարիայի եւ Պանդալէոն նահատակի մասունքները, որոնք ամփոփել էր Գրիգորիսը[239], «զայս նշանագործութիւն Յունան Հոնաց[240] եպիսկոպոս, որ ի Մասքթաց[241] աշխարհին էր, եւ յոյժ ճշմարտախօս՝ իւր իսկ ականատես եղեալ պատմեաց»[242]: Երբ Մեծկողմանքի Իսրայէլ եպիսկոպոսը 681 թ. վերջին[243] ուղեւորուեց կովկասեան հոների երկիրը՝ նրանց քրիստոնեայ դարձնելու, եւ դրանով կանխելու յարձակումները Աղուանքի վրայ, հասաւ Լփինքի քաղաքներից մէկը, ուր նա կատարեց Եպիփանի տօնը (6 յունուարի 682 թ.), այդտեղից անցաւ Մեծ Կովկաս լեռնաշղթայի փէշերին տարածուած Ճիղբերի երկիրը, եւ կտրելով Վարդեգրուակի լեռնանցքը, շատ օրերի երթից յետոյ հասաւ «ի վաղնջուցն քաղաքանիստ կայեանս, յայն տեղի, ուր վկայեաց սուրբն Գրիգորիս՝ թոռն մեծին Գրիգորի, կաթողիկոս Աղուանից:Որ եւ անտի յետ աւուրց ինչ հասանէին ի դուռն Չողայ, որ է Ճորն ի Խազրաց»[244]: Այդ մեծ քաղաքամայրը գտնւում էր Սամու-

րի՝ բազմանում Ամազոնի[245], գետաբերանում, ուր Կլեիտարխոսը յիշատակում է ամազոնուհիների բազուհու՝ Թալեստրիայի նստավայրը[246], իսկ Թէոփանէս Միթըլենացին, որ նկարագրել է Պոմպէոսի պատերազմը Միհրդատի դէմ, գրում է Մերմադաս կամ Թերմոդոն, այսինքն Սամուր գետի ափին բնակող ամազոնուհիների մասին: Գետը բաժանում էր նրանց գելերից եւ լեգերից (Γῆλαι καὶ Λῆγαι) որոնց հետ նրանք տարւայ երկու ամիսը սեռական յարաբերութիւն էին ունենում[247]: Այստեղ խօսքն, անկասկած, այսպէս կոչւած Σαυρομάται γυναικοκρατούμενοι-ի մի հին խմբի մասին է: Մասքութները, այսինքն ալանները, այստեղ հաստատուել էին Ք. ծ. հ. 4-րդ դարի սկզբներին: Նրանց անունը պահպանուել է مسقط Մասքութ քաղաքի անւան մէջ, որն ամրացրել էր Խոսրով Անուշիրւանը, եւ յիշատակւում է յաճախ Շուքուրանի հետ[248]: Վրաստանի Գէորգի Երրորդ (1156-1184) թագաւորի մասին կարդում ենք. «Նա շարժւեց մինչեւ Դերբենդի դարպասները, կողոպտեց Մուսկուրի եւ Շաբարանի մերձակայ շրջանները, գրաւեց Շաբուրան (արաբ. شابران) քաղաքը»[249]: Հետագայ ձեւը مسكور Մուշկուր է: Տե՛ս Derbend-nämeh, թարգմ. Միրզա Ա. Քազեմ-բեգ, Ս. Պետերբուրգ, 1851, էջ 7, 2. 30, remark 25 եւ Dom's Caspia քարտէզը: Այս ձեւը համապատասխանում է այսպէս կոչւած թաթերէն բարբառին, ուր նոր պարսկ. d-ն ձայնաւորից յետոյ դառնում է r: Արաբերէն مسقط Մասքութ գրութիւնը ենթադրում է *Maskut ձեւը, ամենաճիշտը, սակայն, Մովսէս Կաղանկատուացու յիշատակած հայերէն Մասքութք-ն է, որը համապատասխանում է արեւմտաալանական (դիգորական) *Masgutä-ին: Դիգորերէնում սա կանոնաւոր յոգնակի ձեւ է *masag<*masəag<massjag-ից, որը արեւմտաալաներէնում (իրոներէն) դառնում է *masǧi-tō[250]: Μασσαγέται առաջացել է հին սոգդերէն յոգնակի *mássjag-ə-tä (շեշտն առաջին վանկի վրայ) ձեւից, որը (*mássja-g) նշանակում է «ձուկ ուտող» կամ «ձուկ բռնող» (անւան փաղաքշականն է), ուրեմն սոգդերէնում ենթադրւում են *massj-ād-, *massj-āsa- կամ *massja-naima ձեւերը[251]: Այստեղ մէկ այլ փաղաքշական ձեւ է անշուշտ Μασσαῖοι-ը Ptol., VI, 14, էջ 426, 26: Հետեւապէս Μασσαγέται հնում եղել է ծաղրանուն, որով սոգդերը կոչել են նրանց:

Անանիա Շիրակացին (Աշխարհ., էջ 27, 2 եւ հաջ.) այսպէս է նկարագրել այդ երկիրը. «Ապա գալիս են Շիղբերը, Ճիղբերը, Փոխերը: Կովկասեան լեռները բաժանւում են երկու բազուկների, որոնցից մէկը ձգւում է ուղիղ: Այստեղ ապրում են Շրւան եւ Խսրւան[252] ժողովուրդները, որոնց բնակավայրը տարածւում է մինչեւ Խոզսվեմ[253]:

Այստեղից է սկիզբ առնում երկար պարիսպը, որը կոչւում է Ապզուտ Կաւատ[254] (եւ ձգւում) մինչեւ Աղմինոն անտառը եւ ծովը:

Սրանցից հիւսիս, Վարդանեան կոչւող դաշտավայրում, ապրում է Մասքութ ժողովուրդը, որի բնակավայրը տարածւում է մինչեւ Կասպից ծովը, որտեղ վերջանում է Կովկասեան լեռնաբազուկը, եւ ուր կառուցւած է Դարբանդի պարիսպը, այսինքն՝ Ճորա պահակ քաղաքի կապ դարպասը՝ ծովի մէջ կառուցւած ահագին մի աշտարակով: Նրանից [Դարբանդի պարսպից] հիւսիս, ծովափին Հոների թագաւորութիւնն է»[255]:

Արցախ նահանգի Հաբանդ, հետագայում Վարանդա, գաւառի տեղը որոշւում է Ամարաս վանքով եւ Ամարաս գետի[256] ափին Ամարաս աւանի աւերակնե-

բով: Հմմտ. **Մակար Բարխուդարեանց**, Արցախ (Բագու, 1895), էջ 113-115. 422, ծնթ. 15 եւ նոյնի քարտէզը «Պատմութիւն Աղուանից» գրքի 1-ին հատորում, Վաղարշապատ, 1902, Hübschmann, Die altarm.. Ortsnamen, էջ 350: Արցախ նահանգը, ինչպէս եւ Կուրից հարաւ ընկած բոլոր գաւառները մինչեւ 363, 367 թթ. պատկանում էին Հայկական պետութեանը[257]: Ուստի նահանգի Խաղխաղ քաղաքը, որ 5-րդ դարում եղել էր Աղուանքի թագաւորների[258] ձմեռային նստավայրը, 2-րդ եւ 3-րդ դարերում հայ թագաւորների ձմեռոցն էր[259]:

Այսպիսով, միանգամայն ճիշտ է, երբ Փաւստոսը Հարանդ գաւառը տեղադրում է «ի կողմանս Աղուանից ի սահմանս Հայոց»: Ուրեմն Գրիգորիսի խնդիրն էր պետութեան հիւսիսային սահմաններն զոնէ մակերեսօրէն քրիստոնէացնել, ինչն Արիստակէսն սկսել էր Ծոփքում, Հարաւային Հայաստանում: Առաքելութիւնը Մասքութների երկրում բխում էր քաղաքական անհրաժեշտութիւնից, ինչպէս 6-րդ դարում Աղուանքի Քարդուկթ[260] եպիսկոպոսի եւ 7-րդ դարի վերջին Իսրայէլ եպիսկոպոսի ուղեւորութիւնը Վարաչան՝ կովկասեան սպիտակ հոնների մօտ: Սակայն, ըստ Փաւստոսի, Ամարասի եկեղեցին կառուցել է Գրիգոր Լուսաւորիչը, եւ ընդհանրապէս նա է քրիստոնէութիւնը տարածել Վրաստանում եւ Աղուանքում, իսկ նրա թոռ Գրիգորիսը հաստատել ու ամրապնդել է: Յիրաւի, Ագաթանգեղոսի Պատմութեան մէջ (պարբ. 842, էջ 439, 3, 440, 4 627, 20 - 628, 14) կարդում ենք. «Եւ այսպէս ընդ ամենայն երկիրն Հայոց ի ծագաց մինչեւ ի ծագս, ձգտէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն եւ աւետարանութեանն, ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն Խաղտեաց, մինչեւ առ Կաղարջօք, մինչեւ ի սպառ ի սահմանս Մասքթաց[261], մինչեւ ի դրունս Ալանաց, մինչեւ ի սահմանս Կասպից[262], ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց. եւ յԱմդացւոց քաղաքէն մինչեւ առ Մծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Առոււոց [Միջագետք] առ Նոր Շիրականն [Ադիաբենէ] երկրաւն, եւ առ Կորդուօք մինչեւ յամուր աշխարհին Մարաց (Gott'n), մինչեւ առ տամբն Մահքր-Տան (Անձեւացիք) իշխանին, մինչեւ յԱտրպատական ձգտէր տարածանէր զաւետարանութիւնն իւր»[263]: Այս նախադասութիւնն սկիզբն է մի ամբողջ պարբերութեան, որ բառացի արտագրուած է Կորիւնից[264], ուր խօսւում է սուրբ Մաշտոցի մասին. «Եւ այնպէս զամենայն կողմանս Հայոց, Վրաց եւ Աղուանից, զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն եւ զձմեռն, զտիւ եւ զգիշեր՝ անվեհեր եւ առանց յապաղելոյ իսկ, իւրով աւետարանական եւ ողջապատում զնացիւքն՝ առաջի թագաւորաց եւ իշխանաց, եւ ամենայն հեթանոսաց եւ անընդդիմակաց ի հակառակորդաց՝ զամենափրկչին Յիսուսի անուն կրեաց յանձին»: Սահմանի բերւած նկարագրութիւնը Կորիւնի՝ **զամենայն կողմանս Հայոց Վրաց եւ Աղուանից** նախադասութեան հարազատ շարադրանքն է եւ փաստօրէն հնարաւորին

չափ սառյգ տալիս է չմասնատուած Հայկական պետութեան սահմաննե-րը՝ ներառեալ Վրաստանը եւ Աղուանքը: Իսկ **ձգտէր տարածանէր զմշա-կութիւն քաղաքութեանն եւ աստուածպաշտութեանն** բառերը Ագաթանգեղոսն աւելացրել է ըստ իմաստի:

Սակայն Վրաստանի առնչութեամբ մենք սառյգ գիտենք, որ նա քրիստոնէութեանը ծանօթացել է Բակուր թագաւորի օրօք, եւ ուրեմն ոչ թէ Լուսաւորիչը, այլ նրա թոռ Գրիգորիսն է քարոզել այնտեղ: Նոյն վըս-տահութեամբ կարող ենք մերժել Աղուանքի վերաբերեալ այն պնդումը, թէ այստեղ Լուսաւորիչն է հիմնադրել եկեղեցին: Այս կէտծիքն անշուշտ հե-տապնդել է նիհրապետական նպատակ, այն կանոնապէս հիմնաւորել է հայ եկեղեցու գերագոյն իշխանութիւնը Աղուանից եւ Վրաց եկեղեցինե-րի վրայ: Բայցեւայնպէս գերագոյն այդ իշխանութիւնը սուրբ Մաշտոցի եւ նրա աջակից Սահակի մեծածաւալ եւ խորիմաստ գործունէութեան նուաճումն էր, եւ այն, ինչպէս արդէն նշեց, առաջադրւելով Սելեւկիայի կաթողիկոսի պահանջով, տուեց Երանի կաթողիկոսին, այսինքն՝ Պարս-կական կայսրութեան պատրիարքին: Երկրորդ ժողովում (420) Իհաքա-լահա կաթողիկոսը յաւակնում էր հետեւեալ տիտղոսին[265]. կաթողիկոս Բէթ Լապատի, Նիսիբիսի, Պարսի, Հայաստանի, Պերաթի, դե Մաիշա-նի, Խղաիջաբի, Բէթ Գարմէի, Գուրզանի (Իբերիա), Բէթ Մադաչէի (Մե-դիա), Արանի (Աղուանք), Աբարշահրի, Ադարբաջագանի, Կզգինեըի (Պարսից ծոցի), Իստահրի, Կարկայի (դե Բէթ Սելոկ), Արզոնի, Շուշի (Սուսա), Շուշտարի, Բալաշֆարի, Դասքարթայի, Զաբէի, Պերոզ-Շաբո-րի (Ամբար), Դար[աբ]գիրդի, Բեթ Դարաչէի, Շաբոր-խուաստէհի, Արդա-շիր-ֆարեհի, Բէթ-Շաբորի (Պարսում), Ճաիմարաաի: Ըստ այդմ այն ըմ - բռնուեց որպէս ինքնահաստատման հակաքայլ եւ գործոյթ:

Վրաստանի եւ Աղուանքի կաթողիկոսի տիտղոսը, որ Փաւստոսը վե-րագրում է Գրիգորիսին, ինքնին ժամանակի առումով հակասութիւն է: Սակայն պէտք է նշել, որ նա է Աղուանքում ցանել քրիստոնէութեան սեր - մերը: Հակառակ բոլոր հակահարուածներին, որոնք անշուշտ այնտեղ ա - ռաւել յուժկու էին, քան Հայաստանում, այն գոյատեւեց մինչեւ Մաշտո - ցի երեւան գալը, չնայած ժողովուրդը դեռ մեծ մասամբ հեթանոս կամ կի - սահեթանոս էր[266]:

*

* *

Դնէլի սպանութիւնից յետոյ (29 օգոստոս 359 թ.) «սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ եւս յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչեւ յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ («չունե - տր») ոմն անուն, եւ կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէու-

քեանն. եւ էր ըստրուկ ի սարկաց արքունի: Ապա հրաման տայր թագաւորն՝ կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին, զի եկեսցեն ձեռնադրեսցեն զՉոնակ (այսպէս) ի կաթողիկոսութեան Հայոց: Եւ ոչ մի որ ոչ հաւանեաց գալ. բայց միայն Աղձնեաց եւ Կորդուաց եպիսկոպոսք եկին. եւ զՉոնակն ձեռնադրեցին ի կաթողիկոսութիւն ըստ հրամանի թագաւորին: Եւ էր Չոնակն այր զգօն. եւ ոչ ինչ ունէր լեզու յանդիմանութեան կամ խրատու, այլ հաւանեալ էր թագաւորին զինչ եւ նա գործիցէ»[267]:

Նախ ասենք, որ Չունակը անձնանուն չէ, այլ մականուն, իսկ ճիշտ անունը յայտնի չէ: Այստեղ խօսքը Աղձնիք եւ Կորդուք նահանգների եպիսկոպոսների մասին է, նահանգներ, որոնք մեզ արդէն ծանօթ են որպէս քորեպիսկոպոս Դանիէլի աշակերտներ՝ սուրբ Եպիփանի եւ Շաղիտայի քարոզչութեան տարածքներ, հանգամանք, որ ամենից առաջ կարող է սուեր ձգել վկայութեան վրայ: Աղձնիք (Արզոն) եւ Բէթ-Զաբդե գաւառներն այդ ժամանակ պատկանում էին Հռոմի գերիշխանութեան տակ գտնուող սատրապներին, մինչդեռ Կորդուքը (Կորդուենէ)՝ Դալերիոսից խլած գաւառներից մէկը, 359 թ. մասամբ պարսիկների իշխանութեան տակ էր[268]: Ասորական վկայաբանութիւններում յիշատակւում է Բէթ-Զաբդէի Հելիոդորոս եպիսկոպոսը, որը 360 թ. պարսիկների կողմից ամրոցի պաշարման ժամանակ (Ammian., 20,7,7-9) փորձում էր Շապուհին ետ պահել յարձակման մտքից, իսկ ամրոցի անկումից յետոյ այլ գերիների հետ տարւում է Բեց Հուզաչէ եւ այնտեղ սպանւում[269]: Ըստ իս, այս վկայութեան հաւաստիութիւնը առիք չի տալիս տարակուսելու, մանաւանդ որ Մեշիխա-զեկան Ք. ծ. հ. 2-րդ դարի առաջին քառորդին իր Արբելայի եկեղեցու պատմութեան մէջ յիշատակում է Բէթ-Զաբդէի Մազրա եպիսկոպոսին, որը Պերիդայի սարկաւագ Շեմշոնին օծել էր Արբելայի եպիսկոպոս (շուրջ 118-123)[270]: Ըստ Մար Շաղիտայի ասորական վարքի՝ վերջինս գործել է ոչ թե Քարդուում, այլ Փենակից ոչ հեռու գտնուող Բէթ-Զաբդէում: Կորդուքի այդ մասի, որը 359 թ. պարսիկների տիրապետութեան տակ էր, սատրապն էր Յովինիանոս անունով մէկը, որը իբրեւ պատանդ Ասորիքում յունական կրթութիւն էր ստացել եւ գաղտնի պահում էր հռոմէացիների կողմը[271]: Կարծում եմ, որ լրիւ հնարաւոր է, որ այն ժամանակ արդէն հռոմէական Աղձնիքում եպիսկոպոս կար:

## 6. ՆԵՐՍԷՍ

Այնուհետեւ մի կարճ ժամանակահատուած ծաւալւում է Ներսէս կաթողիկոսի եպիսկոպոսական գործունէութիւնը: Եւ քանի որ ժամանա -

կազրութիւնը պատմութեան ողնաշարն է, ապա փոքր-ինչ կանգ առնենք ժամանակագրական հետազօտութեան վրայ: Փաւստոսը, օգտւելով ժամանակակից եկեղեցիների պատմութիւնից, յատկապէս Բարսեղ եպիսկոպոսի խիստ առասպելական, գունազարդուած վարքից, իր հերոսին՝ Ներսէսին, վերջինիս հետ զուգահեռներ անցկացնելով եւ օտար փետուրներով զարդարելով, մասնակիօրէն ստեղծել է Ներսէսի պատմութեան ամբողջապէս աղաւաղուած պատկերը: Որ նրա կարծեցեալ աքսորը պատմական հիմք չունի, նշել եմ աւելի քան 30 տարի առաջ: Նոյնը վերաբերում է նաեւ նրա օծման արարողութեանը մետրոպոլիտ Եւսեբիոսի ձեռքով, որը պարզապէս վերցւած է Բարսեղի վարքից: 358 թ. Աթանասիոս եպիսկոպոսը արիանոսականների դէմ վանականներին ուղղւած իր ջատագովութեան մէջ յանդիմանում է Կոստանդիանոս կայսրին՝ մերձաւորների դէմ գործած մի ամբողջ շարք անարգ արարքների համար.

τί δὲ θαυμαστὸν εἰ πλανηθεὶς εἰς ἀσέβειαν οὕτω κατὰ τῶν ἐπισκόπων ἐστὶν ὠμός, ὅπου γε οὐδὲ τῆς ἰδίας συγγενείας ὡς ἄνθρωπος ἐφείσατο; Τοὺς μὲν γὰρ θείους κατέσφαξε, καὶ τοὺς ἀνεψιοὺς ἀνεῖλε· καὶ πενθεροῦ (πενθερὸν ?) μὲν ἔτι τὴν θυγατέρα γαμῶν αὐτοῦ, συγγενεῖς δὲ πάσχοντας οὐκ ἠλέησεν, ἀλλὰ καὶ ὅρκων ἀεὶ πρὸς πάντας παραβάτης γέγονεν. Οὕτω γὰρ καὶ εἰς τὸν ἀδελφὸν ἀσεβεῖν τετόλμηκε. Καὶ προσποιεῖται μὲν οἰκοδομεῖν αὐτῷ μνημεῖον, τὴν δὲ μνηστὴν αὐτοῦ τὴν Ὀλυμπιάδα βαρβάροις ἐκδέδωκεν, ἣν ἐκεῖνος μέχρι τελευτῆς ἐφύλαττε, καὶ ὡς ἰδίαν ἀνέτρεφεν ἑαυτῷ γυναῖκα. Καὶ τὴν γνώμην δὲ αὐτοῦ παραλύειν ἐπείρησεν, οὗ καὶ κληρόνομος εὔχεται εἶναι, γράφων τοιαῦτα ἐφ᾽ οἷς καὶ ὀλίγην αἴσθησιν ἔχων ἄν τις ᾐσχύνθη[272]:

Պրետորիաների պրեֆեկտ Աբլաւիոսի դուստրը՝ Օլիմպիան, որը նշանւած էր Կոստանդիանոսի եղբօր՝ Կոստանսի հետ (վերջինս խիստ նիկիամէտ էր եւ մահացաւ 350 թ.), ամուսնանում է Հայոց Արշակ թագաւորի հետ, որին Աթանասիոսը արհամարհանքով բարբարոս է կոչում: Այդ ամուսնութիւնը պէտք է, որ կնքւած լինի 358 թ. ոչ շատ առաջ, քանի որ Աթանասիոսը այդ մասին խօսում է որպէս բոլորովին մի նոր երեւոյթի: Հաւանաբար եպիսկոպոսը ցանկացել է ասել, որ Օլիմպիային զոհ են տւել ի շահ քաղաքականութեան, որն անշուշտ արդարացի է:

Տեսնենք, թէ ինչ է գրում Փաւստոսը. «Յաղագս Ներսիսի Հայոց կաթողիկոսին, թէ զիարդ յԱրշակայ արքայէ առաքեցաւ առ Վաղէս կայսրն հանդերձ նախարարօքն... եւ կամ (կայսրը) զայլ նախարարսն արձակեաց հանդերձ պատարագօք:

Ապա վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն, որ էր

[մեր] աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց. դէպ եղեւ առաքել անդր կազմութեամբ մեծաւ արքային Հայոց. զի ինքնին[273] մեծ կաթողիկոսն Հայոց Ներսէս. եւ ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն ընդ նմա առնել[274]. զի երթիցէ. ի մէջ կայսերն եւ ի մէջ իւրեանց զուխտն հաւանութեան եւ խաղաղութեան նորոգեսցեն: Ապա չոգան գնացին հասին ի կայսերական պաղատն (παλάτιν) թագաւորացն Յունաց»[275]:

Անշուշտ այդ նիրակութեան խնդիրը, ինչպէս ասում է շարադրանքում, դաշինքը կայսեր հետ նորոգելը եւ Հայոց թագաւորի համար ազնուական հարսնացու, աւելի ճիշտ կայսերական արքայադուստր գըտնելն էր: Առաքելութիւնը պսակւում է յաջողութեամբ, եւ «յայն յիշխանաց, որ ընդ սրբոյն Ներսէսի երթեալ էին յերկրէն Հայոց, զնոսա (բացի Ներսէսից) բազում գանձիւք լցեալ արձակէր կաշառակուրծս կաշառաւ եւս առնէր առ հասարակ՝ որ միայն անդ էին, եւ բազում գանձս ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատուականաց ի ձեռն նոցա՝ արքային առաքէր, իբրեւ այնու կամէր հաճել զմիտս թագաւորին: Զի ոչ գոյր չափ եւ ոչ թիւ, զի անհամար գանձ առաքէր արքային Հայոց. գրէր առ նա գիր ամբաստանութեան զսրբոյն Ներսէսէ, իբրեւ թէ սպան զորդի նորա: Եւ արձակեաց եւս զպանդանդսն զԱրշակունիսն թագաւորին Հայոց, որ կային եւս ի կայսերական պաղատանն. զի են նորա եղբօրորդիք արքային Արշակայ, զի միումն անունն ճանաչէր Գնէլ, եւ միւսումն անունն Տիրիթ, եւ ի ձեռս սատրապացն Հայոց, եւ զնոսա զայս օրինակ անդրուստ յուղարկէր[276]:

Յաղագս դարձի իշխանացն անդրէն յերկիրն Հայոց, որք երթեալք էին առ կայսրն Վաղէս, զի եկին դարձան առ տէրն իւրեանց Արշակ...

Այսորիկ են իշխանքն, որք չոգան ի թագաւորէն մեծէ Արշակայ ի Հայոց աշխարհէն առ կայսրն Յունաց առ Վաղէս. ինքնին մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծ նահապետն Մամիկոնեան տոհմին, որում անուն Վարդան կոչիւր, եղբայր սա մեծի ստրատելատին (στρατηλάτης) Հայոց որում Վասակն կոչէր. որ դայեակք եւ սնուցիչք էին թագաւորի Արշակայ:

**Եւ ընդ նմա**

**Մեհէն**[277] նահապետն Ռշտունեաց, եւ
**Մեհառ** նահապետն Անձեւացեաց, եւ
**Գարջոյլ Մաղխազ** նահապետն Խորխոռունեաց, եւ
**Մուշկ** նահապետն Սահառունեաց, եւ
**Դեմեռ** նահապետն Գնթունեաց, եւ
**Կիշկէն** նահապետն Բագէնից, եւ
**Սուրիկ** նահապետն Հրսիձորոյ /?/ եւ
**Վրկէն** նահապետն Հարուժէնից:

Սորա չոգան դեսպանութեամբ ի սէր միաբանութեան առ կայսրն Վաղէս: Իսկ թագաւորն Վաղէս արգել աքսորեաց զմեծն քահանայապետն Ներսէս, եւ փոխանակ սորա արձակեաց զեղբօրորդի զթագաւորին Արշակայ զԳնէլ եւ զՏիրիթ, եւ զանձս բազումս եւ անթիւ վասն զմիտս հաճել թագաւորին Արշակայ, ի ձեռս Վարդանայ եւ որք ընդ նմա էին, առաքէր: Եկին հասին դեսպանքն երթեալք ի կայսրէն առ թագաւորն Հայոց Մեծաց Արշակ եւ մատուցանէին նմա զհրովարտակն կայսերն. եւ ընդ նմին գիր, տրտնջելոյ եւ ամբաստանութեան: Ձի գրեալ էր կայսրն զսրբոյն Ներսիսէ առ թագաւորն Հայոց Արշակ, թէ նա սպան զորդին իւր զմիամօր, վասն այսորիկ ինչ լինիցիս, ընկալ զպատանեակսդ առաջի զարձակեալսդ զերկոսեան զեղբօրորդիսդ [Արշակայ][278], զԳնէլ եւ զՏիրիթն: Ունէին եւ զանթիւ կարասի զանձուցն առաջի թագաւորին»[279]:

Ապա հետեւում է ի հատուցումն Ներսէս կաթողիկոսի վերադարձի արգելքի Կապադովկիայի վրայ՝ մինչեւ Անկիւրա քաղաքը, հայերի յարձակման գրոտեսքային պատմութիւնը:

Այն, որ Ներսէսի աքսորը եւ դրա շարժառիթը վերցուած է Բարսեղի պատմութիւնից, հիմնականում ընդունում է ըստ իմ առաջադրած փաստարկների: Այնուամենայնիւ, Ներսէսն իրօք նիհրակների հետ չի վերադարձել: Արշակաւան ազատ քաղաքի հիմնադրման ժամանակ (Փաւստ., 4-րդ, ԺԲ) նա Հայաստանում չէր, նրան փոխարինում էր Բազրեւանդի Խադ եպիսկոպոսը: Հաւանաբար նա Հայաստան է վերադարձել կայսեր մահից յետոյ, մինչ երկրաշարժը (կարդա՛ **սատանումն սատակումն-ի** փոխարէն), որից կործանուեց այդ ազատ քաղաքը:

«Յաղագս որ ինչ իբրեւ դարձաւ սուրբ կաթողիկոսն Ներսէս յերկրէն Յունաց, թէ որպէս կշտամբէր զարքայն, կամ որպէս լինէին նշանք սխաղինք ի վերայ աւանին Արշակաւանի, եւ սատակեցան առ հասարակ յանկարծօրէն ամենայն բազմութիւն մարդկան՝ որք յայնմ տեղւոջ էին:

Այլ իբրեւ սատակեցաւ կայսրն[280], դարձան ամենայն հովիւքն եպիսկոպոսքն՝ որք աքսորեալք էին (ἐξορίζειν), եւ կեցեալք էին յիւրաքանչիւր քաղաքս: Յայնժամ դարձաւ եւ սուրբ կաթողիկոսն Ներսէս յանապատ ի կղզւոյ անտի, ուր էր զնոսա արգելեալ եւ համաշխարհի էին խնդրուածք միաւանգամ աշխարհի շնորհեցաւ: Իբրեւ եկն յաշխարհին Հայոց, ընդ առաջ երթային նմա ի գաւառաց գաւառաց եպիսկոպոսք հանդերձ իւրաքանչիւր ժողովրդովք, եւ նախարարք ամենայն եւ ամենայն գաւառակալք: Եւ բերէին առաջի նորա զիւրաքանչիւր հիւանդս, եւ բժշկէր զնոսա. ուր եւ բազում իսկ եւ կարի յաճախէր զհիւթիւն ի փառս Աստուծոյ, եւ ամենայն վառողինքն առ բազում գութ հովուապետին՝ համարէին զանձինս իւրեանց թէ ինքեանք իբրեւ զնոսա ի գերութենէ դարձեալ իցեն:

Եւ առնէին ուրախութիւն բազում հոգեւորս մեծաւ ցնծութեամբ: Հա-

մաշխարհ ամենայն որ իւրաքանչիւր Տեառն Աստուծոյ զեղեալ ուխտս կատարէին, որ ի վերայ հոգեւոր զաննձին հայրապետին՝ որ առաւ նոցա. եւ կատարեաց նոցա զխնդրուածս նոցա, եւ զորբութիւն արտառութեան անձանցն սրակեղ ցաւոցն սրտաբեկութեանն, միասանգամ սիրով գթով վարդապետութեամբ հոգեւոր հարբն մխիթարեաց զամենեսեան: Ամենեքեան ի դժնէ տրտմութենէն զւարթացեալք յուրախութիւն դառնային: Ինքն իսկ թագաւորն Արշակ երթայր ընդ առաջ նորա, մինչեւ ի կողմանս Բաքասերոյն, եւ անդի մեծաւ զւարթութեամբ դարձան: Եւ սկսան նորոգել եւ պայծառանալ վարք աշխարհի եւ կարգացն եւ օրինացն եկեղեցեացն»[281]:

Կաթողիկոսը նոր էր վերադարձել, երբ Խադ եպիսկոպոսից տեղեկանում է Արշակաւանի խայտառակութեան մասին: Նա թագաւորին խիստ կշտամբում եւ պահանջում է կա՛մ կասեցնել քաղաքի կառուցումը, կա՛մ ճիշտ հիմքերի վրայ դնել այն: Թագաւորը քամհարում է նրա խօսքերը, իսկ երեք օր անց տեղի է ունենում ահեղ դատաստանը, եւ մի հարւածով ոչնչանում է ոճրագործ քաղաքը:

Այդ երկրաշարժն ամենայն հաւանականութեամբ տեղի է ունեցել 358 թ. յետոյ, իսկ նւիրակութեան այցը եւ Օլիմպիայի ու Արշակ թագաւորի ամուսնութիւնը՝ 357 թ.: Ներսէսը, այսպիսով, ոչ թէ 9 տարի (ամս)[282], այլ հազիւ 9 ամիս (ամիսս) է բացակայել Հայաստանից: Այն, ինչը նրան այդքան ժամանակ պահեց հռոմէացիների երկրում, լաւ բան լինել չէր կարող: Հաւանաբար երկու կուսակցութիւնները՝ կայսրից հովանաւորւող արիոսականները եւ նիկիականները, փորձում էին իրենց կողմը քաշել նրան: Սակայն այս մասին ոչ մի յիշատակութիւն չկայ հայկական աւանդութիւններում: Կոստանդիանոս (3 նոյ. 361 թ. Մոփսուեստիա) եւ Վաղէս (մահ. 378 թ. օգոստոսի 9-ին, Ադրիանուպոլիս) կայսեր օրօք երկրի արիանոսականութեան շրջանի նկարագրութիւնը Փաւստոսի պատմութեան խճողուած հանգոյցներից մէկն է համարւում, իսկ երկու կայսերները միաձուլւած են մէկ անձնաւորութեան՝ Վաղէս կայսեր մէջ: Սա վերցված է առասպելական, խիստ գունազարդւած յունական կամ ասորական աղբիւրից: Սակայն որոշ հատուածներում պարզորոշ պահպանւել է յիշողութիւն Իսաւրայում Արիմինում-Սելեւկիայի ժողովի մասին, որը գումարւել էր Սելեւկիայում 359 թ. սեպտ. 27-ին եւ գործել մինչեւ 360 թ. (հմմտ. Փաւստոս, IV, Ե, էջ 91, 6-92, 7): Մէկ այլ տեղում, ուր պատմւում է մի տեսիլքի մասին, որ երեւացել է սրբուհի տիկին Թեկղիի քաղաքից դուրս (Սելեւկիա՝ Իսաւրայում) գտնւող վկայարանում (Փաւստ., IV, Ժ, էջ 103-105, 30), դարձեալ պահպանւած է աղօտ յիշողութիւն Սելեւկիայի ժողովի մասին՝ միախառնւած Վաղէսի իշխանութեան վերջին տարիների անցքերով, որտեղ Բարսեղը մեծ դեր է խաղացել: Ներսէսը Սե-

լեկիայի ժողովի ժամանակահատուածում, սակայն, չէր կարող Հռոմէական կայսրութիւնում լինել:

*

* *

Դժուար թէ Ներսէսը, որ կաթողիկոս ընտրուելուց առաջ եղել էր «ի վարս զինուորութեան ի գործակալութեան, սիրելի սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն ի ներքոյ եւ արտաքոյ»[283], մեծ հետաքրքրութիւն ցուցաբերէր յունական աստուածաբանութեան դաւանաբանական հարցերի նկատմամբ, առաւել եւս գաղափար ունենար այդ մասին: Հաւանաբար նա այցելել է յայտնի եպիսկոպոսների՝ ուսումնասիրելու այդ խիստ վիճելի հարցերը՝ սեփական կարծիք կազմելու համար: 357 թ. Զմիւռնիայում տեղի է ունենում երկրորդ ժողովը, ինչպէս նաեւ մէկ այլ ժողով Անտիոքում, որտեղ անհոմոիրականները կարողանում են անցկացնել իրենց դրոյթները: Նոյն թւականի հոկտեմբերին Անկեռնի կիսաարիանոս եպիսկոպոսները մերժում են անհոմոիրականների դաժան ուսմունքը: Այդ ժողովի պատգամաւորների թւում էր Եւստաթիոս Սեբաստացին (ամենաուշը՝ 356 թ.). նրանք ժողովի որոշումով ուղեւորւում են Կոստանդիանոս կայսեր մօտ՝ համոզելու նրան ընդունել Որդու՝ Հօր հետ ունեցած էական նմանութիւնները: Այնուհետեւ՝ 358 թ. վերջին, կայսրի հրամանով հրաւիրւում է մի նոր ժողով, որտեղ կիսաարիանոսականների ուսմունքը յայտարարւում է կատարեալ, իսկ անհոմոիստականութիւնը՝ մերժւում:

Եթէ կարելի է վստահել Փաւստոսի պատումին, ապա առաջին հերթին բարոյագիտութիւնը, դրսից ներմուծուած մի ուսմունք, եւ արտակարգ գթասրտութիւնն են խթանել Ներսէս կաթողիկոսին եւ մղել նրան եռանդուն գործունէութեան եւ խստագոյն պատժի[284]:

Անշուշտ դրանք հաստատւում էին այն ժողովներում, որոնք նա գումարում էր Աշտիշատում՝ իր կաթողիկոսութեան սկզբնական շրջանում: Մեծարժէք գործունէութիւնը, որ Ներսէսը ծաւալել էր երկրում՝ աղքատանոցների, հիւանդանոցների, կուսանոցների հիմնում, մուրացիկութեան վերացում, կարող է ընկալուել միայն Եւստաթիոս Սեբաստացի եպիսկոպոսի անձի հետ համադրութեան մէջ: Հնարաւոր է, որ Ներսէսը Կոստանդնուպոլսից վերադառնալիս բաւական ժամանակ մնացել է Եւստաթիոսի մօտ:

*

* *

Ներսէսի կաթողիկոս ընտրուելու թւականի ճշգրտման համար, անհրաժեշտ են յուսալի կռուաններ: Ըստ Փաւստոսի՝ կաթողիկոսի ընտրութիւնը տեղի է ունեցել Արշակ թագաւորի իշխանութեան գալուց անմի -

ջապէս յետոյ: Սակայն այն պատմութիւնը, որ Արշակը իր կոյր հօր՝ Տիրանի հետ ազատում է պարսկական գերութիւնից եւ թագաւոր կարգւում Պարսից Ներսեհ թագաւորի կողմից, շնորհիւ Յունաստանի Վաղէս եւ Պարսից Ներսեհ թագաւորների միջեւ կնքուած հաշտութեան պայմանագրի[285] ունի պատմական յետնախորք՝ 298 թ. հաշտութեան պայմանագիրը Պարսից Նարսեհ թագաւորի եւ Վալերիոս Գալերիուս կայսրի, ինչպէս նաեւ Դիոկղետիանոսի միջեւ եւ պատմական արժէք չի ներկայացնում: Ինչպէս է թագազրկւել Տիրանը, յայտնի կը դառնայ, երբ կը գտնենք նոր աղբիւրներ:

Քաղաքական ընդհանուր նկատառումներից ելնելով՝ կարելի է ենթադրել, որ նիհրակների առաքումը Կոստանդնուպոլիս եւ ամուսնութիւնը Օլիմպիայի հետ տեղի են ունեցել Արշակ թագաւորի իշխանութեան գալուց կարճ ժամանակ անց: Սրանով է հաշւում նաեւ Ներսէսի կաթողիկոսութեան սկիզբը՝ 356 կամ ամենաշուտը՝ 355 թթ.: Օլիմպիայի եւ Արշակի ամուսնութիւնը, այսինքն կայսեր խնամիանալը Հայոց թագաւորի հետ 360 թ., Կոստանդիանոսը համարում է քաղաքական կարեւոր, գործուն քայլ եւ Արշակին կանչում է Կապադովկիայի Կեսարիա մայրաքաղաքը. «Constantius adscitumArsacem Armeniae regem summaque liberalitate susceptum praemonebat et hortabatur, ut nobis amicus esse perseveraret et fidus, audiebat enim **saepius** eum temptatum a rege Persarum fallaciis et minis et dolis, ut Romanorum societate posthabita suis rationibus stringeretur[286]. qui crebro adiurans animam potius posse amittere quam sententiam, muneratus cum comitibus, quos duxerat, redit ad regnum nihil ausus temerare postea promissorum, obligatus gratiarum multiplici nexu Constantio, inter quas illud potius excellebat quod Olympiada, Ablati filiam praefecti quondam praetoris, ei copulaverat coniugem, sponsam fratris sui Constantis»[287]:

*

* *

Արշակի եղբօրորդու՝ Գնէլի սպանութիւնը տեղի է ունեցել նաւասարդի օրը (359 թ. օգոստոսի 29-ին), իսկ շատ չանցած թագաւորը նրա այրիին՝ Փառանձեմին, կնութեան, առելի ճիշտ հարճ է վերցնում, քանի որ Օլիմպիան նրան ժառանգ չէր պարգեւել: Հազիւ թէ Արշակը համարձակւէր, զոնէ արտաքուստ քրիստոնէական մի երկրում, բացայայտ երկկնութեան դիմել, եւ հազիւ թէ Կոստանդիանոսը այդ վիրաւորանքը հանգիստ ընդունէր եւ Կեսարիայում՝ հանդիպման ժամանակ, թագաւորից հաշիւ չպահանջէր: Այս մասին Ամմիանոսը շատ քիչ բան է հաղորդում: Իզուր չէ Հայր մարդպետը Փառանձեմին բոզ որակում[288]: Փաւստոսի պատումը, ըստ որի Արշակը Օլիմպիային առաջարկութիւն է արել

միայն այն բանից յետոյ, երբ չի կարողացել նւաճել Փառանձեմի սիրտը (IV, ԺԵ, էջ 126, 20-35), անշուշտ առարկելի է եւ ժամանակագրական ա-ռումով անհնար: Փառանձեմը թագաւորի համար ծնում է որդի՝ Պապ ա-նունով (էջ 126, 27-31): Սակայն բնաւ չի բացառում այն հնարաւորութիւ-նը, որ նա լինէր Գնէլի որդին՝ ծնւած նրա մահից յետոյ: Չնայած Փա-ռանձեմն առում էր թագաւորին, սակայն Օլիմպիա թագուհու հանդէպ տածում էր նախանձ եւ խանդ, ի վերջոյ վերացնում է նրան՝ հաղորդու-թեան հացին թոյն խառնելով: Անհնար է, որ այս ոճիրը կատարւած լինի Կոստանդիանոս կայսեր օրօք, այն տեղի է ունեցել հաւանաբար Յու-լիանոս կայսրի ժամանակ:

*
* *

Ըստ այդմ կարելի է վերականգնել 325-363 թթ. իրադարձութիւնների ժամանակագրական հետեւեալ աղիւսակը.

325 Նիկիայի ժողովը: Մասնակցութեամբ՝ Ծոփքի եպիսկոպոս Արիստա-կէսի (միջ. մեռ. Ռուստակ), Գրիգորի առաջնորդական գլխաւոր տեղա-պահ ու Տարօնի քորեպիսկոպոս ’Ακρίτης-ի (Վահրիճ)=Դանիէլ, եւ Յակոբ Մծբնացու:

335 Գրիգորիսի քարոզչութիւնը Մասքութների երկրում: Գրիգորիսի սպանութիւնը:

Մասքութների արշաւանքը Հայաստան:

335 (շուրջ) Կոստանդիանոս կայսրի յաղթանակը պարսիկների հանդէպ Նարսեհի մօտ:

Ընկնում է Նարսեհ արքայազնը[289]:

Դատարենի դաւաճանութիւնը: Առեստի ճակատամարտը: Բզնունեաց նախարարական տան սերհատումը (Փաւստոս, III, Ը, էջ 18, 31-20, 30):

Աղձնիքի Բակուր բդեշխի դաւաճանութիւնը: Բդեշխի տոհմի սերհատու-մը (Փաւստոս, III, Թ, էջ 21):

335 սեպտ. 18: Արքաների եւ պոնտական ժողովուրդների արքայ Հաննի-բալ:

336 գարուն: Մասքութների բնաջնջումը:

338 Պարսիկների պատերազմը հայերի դէմ:

Ընկնում է Վաչէ սպարապետը (Փաւստոս, III, էջ 28, 28):

338 (շուրջ) Խոսրով Երկրորդ թագաւորի եւ Վրթանէս կաթողիկոսի մահը (Փաւստոս, III, ԺԱ, էջ 28, 29-29, 10):

341 Պարսիկ իմաստունի (Ափրահատ) ճանապարհորդութիւնը Ռշտու-նիք[290]

Ընձաքիարսի երկրաշարժը (Փաւստոս, III, Ժ, էջ 24, 1-25, 14):

356 (ամենաուշը) Սեբաստիայի Եւստաթիոս եպիսկոպոսը՝ Հայաստանում, Պոնտոսում եւ Կապադովկիայում միաբանութեան հիմնադիր եւ առաջին հիւանդանոցիստեղծող[291]:
336 (335 ?) Արշակը դառնում է թագաւոր, իսկ Ներսէսը կաթողիկոս է օծւում Կեսարիայում Դանիէլ քորեպիսկոպոսի ձեռքով:
Պարսիկների արշաւանքը Հայաստան եւ Միջագետք: Ammian., 15, 13, 4. 16, 9, 1:
357 Բագրեւանդի եւ Արշարունիքի Խադ եպիսկոպոս:
Արշակի նւիրակութիւնը՝ Ներսէսի գլխաւորութեամբ, Կոստանդիանոս կայսրի մօտ: Դաշինք երկու տիրակալների միջեւ: Արշակն ամուսնանում է Օլիմպիայի հետ: Ներսէսը մնում է Հռոմէական կայսրութիւնում Եւստաթիոս Սեբաստացու մօտ ?:
Զմիւռնիայի երկրորդ ժողովը:
Անտիոքի ժողովը:
Հոկտեմբեր - Անկիւրիայի ժողովը:
357 (շուրջ) Բարսեղի վերադարձն Աթենքից:
358 Արշակաւանի հիմնադրումը:
Ներսէսի վերադարձը:
Օգոստոսի 24 : Երկրաշարժ: Նիկոմեդիայի աւերումը:
Արշակաւանն աւերւում է երկրաշարժից:
Դաշինքի բանակցութիւններ Շապուրի եւ Արշակի միջեւ: Փաւստոս, IV, ԺԶ:
Պարսկական պատերազմի վերսկսում:
359 գարուն: Շապուրի առաջապահ ջոկատների կռիւը Մծբինի մօտ: Ammian., 18, 6, 8-7, 8: Փաւստոս, IV, Ի, էջ 134, 12-136, 7:
Դարձեալ դաշինքի բանակցութիւններ Շապուրի եւ Արշակի միջեւ, նոյն տեղում, էջ 136, 3-139, 16:
Զիատայի գրաւումը: Ammian., 19, 6, 1: Տիգրանակերտ ամրոցի նւաճումն ու աւերումը: Անգղ ամրոցի ապարդիւն պաշարումը: Դարանաղիի Անի (Կամախ) ամրոցի գրաւումը (Փաւստոս, IV, ԻԴ, էջ 145-148):
Ամիդի գրաւումը:
Օգոստոսի 29 : Դնէլի սպանութիւնը:
Արշակը հարճ է դարձնում Դնէլի այրիին՝ Փառանձեմին:
Ներսէս կաթողիկոսը հեռանում է արքունիքից:
«Չունակն» օծւում է կաթողիկոս:
Սեպտեմբերի 27: Իսաւրայում Սելեւկիայի ժողովի գումարումը:
360 Կեսարիայում Արշակի հանդիպումը Կոստանդիանոսի հետ:
Պարսիկները գրաւում են Բեզաբդէն:
Պապի ծնունդը:

361 նոյ. 3: Կոստանդիանոսի մահը:
362 (նոյ. - դեկ. 361): Օլիմպիայի սպանութիւնը: Փառանձեմը՝ թագուհի:
363 Հաշտութիւն յոյների եւ պարսիկների միջեւ, Հայաստանի լքումը՝ Շապուրի եւ Արշակի միջեւ դաշինքի բանակցութիւնների խզումից (359) հինգ տարի անց:

